

## ԿՈՄԲԱՅՆԱՎԱՐ ԻՄ ՔԵՌԻՆ

### ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ

Խշխշում են արտերը շեկ,
Գոհ են իրենց ծանր բեռից։
Հունձ է անում գիշեր-ցերեկ
Կոմբայնավար Աշոտ քեռիս։
Հնձում է նա, անվերջ հնձում,
Լողում դեղին օվկիանի մեջ,
Նրա պայծառ դեմքն է խանձում
Օգոստոսյան արևը թեժ։
Նրա երգի ձայնն է գալիս՝
Լցված շնչով, բույրով հողի,
Ու խնդալով ծափ են տալիս
Պահեստները մեր շեն գյուղի։
Եվ բացվում է դաշտի հեռուն,
Մաքրվում է անգամ հարդից,
Զագերի հետ իրենց սիրուն
Լոռիկներն են փախչում արտից։
Եվ ցորենի շեղջն արևոտ
Հողագործի սիրտն է բացում.
Հարդի դեզը ֆերմայի մոտ
Լուսնի հետ է լուռ զրուցում։

# ԻՄ ՎԵՐԱՐԿՈՒՆ ՓՈՔՐԱՑԵԼ Է...

### ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Երեկոյան անսպասելի ձյուն եկավ։

Առավոտյան ես հագա վերարկուս և տեսա, որ թևերը զգալիորեն կարճացել են։ Ես անմիջապես գլխի ընկա, որ մեծացել եմ արդեն։

Իբրև ապացույց ես խմեցի երկու բաժակ թեյ, կերա կես հաց և նույնիսկ ինձ վատ զգացի։ Բայց դրանից իմ տրամադրությունը բոլորովին չընկավ։ Ավելին, ես նորից զգացի, որ իսկապես մեծացել եմ։

Դպրոց գնալիս ես կուրծքս դուրս էի գցել և ամեն կերպ պրկել ու ձգել էի թևերս։ Մարդիկ ինձ էին նայում ու հասկանում, որ իրենց առաջ մեծ տղա է և ոչ թե երեխայի մեկը։

Դպրոցի մուտքի մոտ ես հանդիպեցի մեր դասարանի ամենագեղեցիկ աղջկան։

— Բարև՛,— ասացի ես։

Նվարդը չգիտես ինչու՝ ծիծաղեց։

Ես արդեն ուզում էի ասել. «Հիմարին մի՛ բարկիր», բայց ժամանակին հիշեցի, որ արդեն մեծ եմ և չնչին բաների վրա չարժե ուշադրություն դարձնել։ Հավանորեն ես էլի վիրավորվել էի, որովհետև մինչև դասի սկսվելը նրա հետ ոչ մի բառ չփոխանակեցի։ Դասը նոր էր սկսվել, երբ ես նրանից ստացա առաջին նամակը։ Դա տետրակի սովորական թուղթ էր, միայն թե ծալված։ Ես բացեցի այն ու կարդացի.

«Չորս ոտք, երկու ականջ. ի՞նչն է դա»։

Ես անմիջապես գլխի ընկա, թե ինչումն է բանը։ Եթե ես գրեմ, որ դա շունն է, Նվարդը կպատասխանի, որ կատուն է։ Իսկ եթե գրեմ, որ դա կատուն է որ կա, նա, իհարկե, կպատասխանի՝ ո՛չ, ձին է։ Ես մյուս երեսի վրա նկարեցի մի կենդանի, որ և՛ կատվի էր նման, և՛ շան, և՛ ձիու, իսկ իրականում՝ և ոչ մեկին։ Բայց վերջում ես այնուամենայնիվ չդիմացա և ավելացրի.

«Պարծենկոտ»։

Նամակը փոխանցեցի։

— Տուր Նվարդին,— ասացի Գևորգին։

Գևորգը հրեց Համիկի մեջքը։

— Փոխանցիր Նվարդին։

Նվարդը նամակը ստացավ, և ես պատուհանից դուրս նայեցի։ Մեծ փաթիլներով ձյուն էր գալիս։ Կողքիս նստած Արան բացեց գիրքը և սկսեց

ՕԳՈՍՏՈՍ
№ 8 1964 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

արագ-արագ կարդալ։ Սամվելը մի վերջին անգամ նայեց գրքին ու գնաց գրատախտակի մոտ։

— Ստացի՛ր,—շրջվեց Գևորգը։

Կարդացի. «Դու նկարել չգիտես, իսկ վերարկուդ շատ ծիծաղելի է»։

Ես այնպես բարկացա, որ աչքերս երևի սարսափելի արտահայտություն ստացան։ Ես երկար չմտածեցի ու գրեցի.

«Դու հիմարի մեկն ես»։

Նվարդը պատասխանեց.

«Դրանից հետո ինձ հետ չխոսես»։

Ես ուղարկեցի պատասխանը.

«Պետքս էլ չի»։

«Նույնիսկ նամակ չգրես,—գրեց Նվարդը,—դու սոսկալի վատն ես, և մայրիկը ասել է, որ քեզ հետ չխոսեմ»։

Ես, իհարկե, գիտեմ, որ նրա մայրիկը ոչ մի այդպիսի բան չի ասել։ Հնարում է։ Բայց և այնպես ես ինձ վատ զգացի։ Արան քաշեց թևս։

— Այդ ի՞նչ է։

— Նամակ,—պատասխանեցի ես։

— Տուր կարդամ։

Թեև ես ու Նվարդը կռվել ենք, բայց ես նրան խոստացել եմ, որ մեր նամակները ոչ ոք չի կարդա։ Արան ինձ համարում է իր ամենամոտ ընկերը, և սա վիրավորական է նրա համար։

— Շատ պետքս է,—ասաց նա,—ես հենց այնպես ասացի։ Դա ինձ բոլորովին չի հետաքրքրում։

Ես նամակը պատառ-պատառ արեցի և դրի նրա առաջ։ Արան հավաքեց ու նետեց իմ կողմը և թղթի կտորները թափվեցին հատակին։ Ես գլուխս մտցրեցի նստարանի տակ, որ հավաքեմ։

— Հավաքի՛ր,—չարախնդաց Արան,—դա դեռ քիչ է քեզ համար։

Ես առաջարկություն ստացա ուղիղ նստել և դասը չխանգարել։ Արան հաճույքից ծլթլթացրեց լեզուն։ Ես լարեցի կամքս, հավաքեցի իմ բոլոր ներքին ուժերը և աշխատեցի լսել, թե ինչ են պատմում։

Դրսում մեծ փաթիլներով ձյուն է գալիս։

Սեղանի վրա գլոբուս է դրված, թեև հիմա հայոց լեզվի դաս է։ Բայց գլոբուսը միշտ էլ այստեղ է։ Երևի նրա համար, որ նայենք ու չմոռանանք, որ երկիրը կլոր է, որ երկիրը ունի հյուսիսային և հարավային կիսագնդեր։ Ես գիտեմ, որ երկու տեղում էլ մարդիկ են ապրում։ Կարծես մի անգամ սովորել ենք, թե ինչու մարդիկ չեն թափվում երկրագնդի վրայից։ Գոյություն ունի ինչ-որ ձգողականության ուժ։ Բայց եթե ինձ հարցնեն, հյուսիսային կիսագնդում ապրողների համար միևնույն է։ Ուրիշ է հարավային կիսագնդում ապրողների բանը։ Պարզ երևում է, որ այնտեղ ապրողները պետք է թրմփան ներքև։ Ու ես չեմ հասկանում, թե ինչպես կարելի է քայլել գլխիվայր ու չընկնել։ Ապա փորձիր քայլել առաստաղի վրա։ Աշխարհի ամենալավ լարախա-



ղացն էլ այդ չի անի։ Հավանորեն ինչ-որ բան այնպես չէ։ Համենայն դեպս ավելի լավ է ապրել հյուսիսային կիսագնդում, մեկ էլ տեսար մեկի գլխին փչեց ոչնչացնել ձգողական ուժը կամ մի ուրիշ բան։

Նվարդը շրջվում է։ Մեր աչքերը հանդիպում են իրար, և նա լեզու է հանում։ Արան դիտմամբ

փովել է Նստարանի վրա, որ ես ասեմ.

— Մի կողմ քաշվիր։

Իսկ ինքը ինչ-որ լավ պատասխան է երևի մըտածել։

Դասը վերջացավ։ Ես դուրս եկա միջանցք ու կանգնեցի պատուհանի մոտ։ Արան այս անգամ նույնիսկ չեկավ իմ կողքին կանգնելու։ Նվարդը անցավ իմ մոտով և մինչև անգամ չնայեց իմ կողմը։ Ես ինձ սարսափելի մենակ զգացի։ Հիմա եթե ինձ ասեն՝ գնանք հարավային կիսագունդ, կգնամ։ Թեկուզ գլխիվայր ընկնեմ ու մեռնեմ։

Զանգը հնչեց։ Ես վերադարձա տեղս ու տեսա, որ գրատախտակից քարտեզը իջեցված է, իսկ գրատախտակին մի աննոռնի դեմք է նկարված։ Ես սկսեցի հիանալ։ Ընկեր Հակոբյանը մտավ ներս։ Այստեղ ես հանկարծ տեսա, որ նկարի տակ գրված է.

«Ա. Ս.»։

«Ա. Ս.» կամ Արմեն Սահակյան միևնույն բանն են։ Ես անմիջապես հասկացա, որ այդ աննոռնի սփաթը ես եմ, իսկ նկարողը՝ Արան։ Առանց մի խոսք ասելու, ես բռունցքով մի լավ հասցրի Արայի կողքին։

Ընկեր Հակոբյանը ցուցափայտը ուղղեց ինձ վրա։ Ես ոտքի կանգնեցի։

— Ինչո՞ւ խփեցիր,— հարցրեց նա։

Ես չպատասխանեցի։ Նա նայեց գետնին ընկած քարտեզին, հետո՝ գրատախտակի նկարին ու հարցրեց.

— Ո՞վ է նկարել։

— Չգիտեմ,— ասացի։

— Գուցե դո՞ւ ես նկարել։

— Ո՛չ։

— Իսկ ո՞վ է նկարել։

Ես համառեցի։

Ընկեր Հակոբյանը ինձ դուրս հրավիրեց։ Ես քարշ եկա մինչև դուռը։ Երբ անցնում էի Նվարդի մոտով, նա նույնիսկ ինձ չխղճաց։

Ես կանգնեցի պատուհանի մոտ։ Դրսում մեծ փաթիլներով ձյուն էր գալիս։ Ես նախանձեցի բոլոր դրսում եղողներին։ Նրանց ոչ ոք չի կարող դասարանից դուրս անել։ Ասենք, դա հնարավոր էլ չէ։ Դրսում գրատախտակ չկա ու քեզ չեն նկարի։

Ընկեր Հակոբյանը չհասկացավ, որ ես չէի կարող ասել, թե ով է նկարել։ Իսկ ինչ վերաբերվում է այն բանին, թե այդ ես էի նկարել, ապա նա նույնիսկ չգիտեր, որ այդ նկարվածը ե՛ս եմ և ինձ չէի նկարի այդպիսի տեսքով։

Ընկեր Հակոբյանին այդ բոլորը չի լինի բացատրել, ինչպես չէր լինի ասել, որ դա Արայի գործն է։ Իսկ Արայի կողքին կարելի է մի անգամ էլ հասցնել։

Մեկը կանգնեց կողքիս, ու ես հասկացա, որ ես



ու Արան դժբախտության ընկերներ ենք։ Առանց հարցնելու էլ պարզ է, որ նա ասել է, թե ինքն է նկարողը, Արայի տեսքից իմ բարկությունը իջավ։

Արայի հայրիկին դպրոց են կանչել։ Դա նշանակում է, որ նա մի շաբաթ կինո չի գնա, մեր ֆուտբոլի թիմում մեկը կպակասի և նա դասը երեք անգամ կարդալու փոխարեն ստիպված կլինի տասն անգամ կարդալ։ Բացի դրանից նա չի կարող հայրիկին ասել, որ հարկավոր է դպրոց գնալ։

Դասամիջոցին մենք մոտեցանք ընկեր Հակոբյանին։

— Ներողություն,— ասաց Արան։

Ընկեր Հակոբյանը կանգնեց ու մեզ նայեց։

— Էլ չենք անի,— ասացի ես։

— Այո՛,— կրկնեց Արան,— էլ չենք անի։ Իսկ Արմենը բոլորովին չի բարկանում, որ ես իրեն նկարել եմ։

Ես բողկի պես կարմրեցի։

— Ուրեմն այդ դո՞ւ էիր գրատախտակի վրա,— հարցրեց ընկեր Հակոբյանը։

Ի՞նչ կարող ես անել։ Ես ստիպված հաստատեցի։







Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Ընկեր Հակոբյանը ժպտաց։ Դրանից ես զգացի, որ նա ինչ-որ բան հասկացել է։

— Էլ չենք անի,— ասաց Արան։

— Դուք իսկապես զղջո՞ւմ եք,— հարցրեց ընկեր Հակոբյանը։

Նա այդ ասաց այնպիսի տոնով, որ ես համարձակություն առա։

— Դե, իհարկե,— ասացի,— զղջում ենք։ Այսինքըն նա զղջում է։

— Իսկ դո՞ւ։

— Ես էլ եմ զղջում։ Նա զղջում է նկարելու, իսկ ես զղջում եմ նրան խփելու համար։

Արան մի անգամ էլ կրկնեց, որ ինքը այլևս գրատախտակի վրա ոչինչ չի նկարի։ Ո՛չ ինձ, ո՛չ էլ ուրիշ որևէ մեկին։

— Իսկ դուք նրա հայրիկին մի՛ կանչեք,— խնդրեցի ես։

— Լա՛վ,— ասաց ընկեր Հակոբյանը,— չեմ կանչի։

— Մենք մեզ լավ կպահենք,— իսկույն ավելացրեց Արան։

Մենք ընկեր Հակոբյանին ցտեսություն ասացինք ու ետ եկանք։ Ես ներսում թեթևություն զգացի ու հասկացա, որ դա նրանից է, որ ընկեր Հակոբյանը հասկացել է մեզ։ Միայն, երբ տուն էի գնում, նայեցի վերարկուիս թևերին ու հիշեցի, որ այսօր մեծացել եմ և կռվել Նվարդի հետ։ Դրանից ինձ վատ զգացի։

Մայթի վրա ձյունը տրորվել էր և կարելի էր սահել։ Արան սահեց։ Հետո ես սահեցի։ Ամբողջ երկու փողոց մենք անցանք սահելով։ Անկյունում Արան ասաց.

— Ցտեսությո՛ւն։

— Ցտեսությո՛ւն,— կրկնեցի ես։

— Մինչև վաղը,— ասաց նա։

— Մինչև վաղը։

Տանը ես մայրիկին խնդրեցի, որ նա երկարացնի վերարկուիս թևերը։ Ոչինչ, եթե նույնիսկ առաջվա նման փոքր երևամ։ Ես հիշեցի, որ երբ վերարկուի թևերը կարճ են, մարդ մրսում է։ Այդպես էլ ասացի մայրիկին։

Հաջորդ օրը ես բոլորովին չբարևեցի Նվարդին։ Միևնույնն է, նա չի պատասխանի։ Բայց վերջին դասին Գևորգն ասաց.

— Ստացի՛ր։

Ես բացեցի նամակը և կարդացի.

«Դու նեղացե՞լ ես, Արմեն»։

Իսկ ես վերցրի ու գրեցի.

«Ես ընդհանրապես ոչ ոքից չեմ նեղանում»։

«Իսկ ինձանի՞ց»,— գրեց Նվարդը։

Այստեղ ես գլխի ընկա, որ պետք է պատասխանել.

«Ո՛չ, Նվարդ։ Արի հաշտվենք»։

Արևը դուրս եկավ ու ընկավ պատուհանին։ Մեկն ասաց.

— Ափսոս, ձյունը կհալվի։

Արևի շողերից մեկը շփոթվեց ու ընկավ նստարանի վրա։ Ես այն ծածկեցի տետրով։ Շողը բարձրացավ տետրի վրա։ Հետո ես ավելացրի մի գիրք ու նորից մի տետր։ Հիմա էլ շողը նրանց վրա բարձրացավ։

Նվարդը նոր նամակ գրեց.

«Դու աղջիկներին ձնագնդիով խփո՞ւմ ես»։

Ես քորեցի ականջս, մի տասն անգամ փոխեցի դիրքս, մի լավ տանջվեցի և գրեցի վերջապես.

«Մեկ-մեկ խփում եմ։ Բայց քեզ երբեք չեմ խփի»։

Ես նամակը տվեցի Գևորգին, նա այն փոխանցեց Հասմիկին և Նվարդը ստացավ նամակը։

Ես նայեցի գլոբուսին։ Երկիրը կլոր է։ Եթե, ասենք, Երևանից դուրս գաս, վերջը էլի Երևան կհասնես։ Այդ նշանակում է, որ կնստես Արայի կողքին և Նվարդին նամակ կգրես։

Ոչինչ, որ մեր նամակները առանց ծրարի ու դրոշմանիշերի են։

Իսկ հարավային կիսագնդի մարդիկ լավ բախտ ունեն։ Ախր, նույնիսկ ամենալավ լարախաղացը չի կարող գլխիվայր քայլել։ Բայց այնուամենայնիվ, թեկուզ հետաքրքրության համար կարելի է գոնե մի օր ապրել այնտեղ։

Լավ է, երբ աշխարհում կա մեկը, որ հասկանում է քեզ։ Ընկեր Հակոբյանը անպայման մեզ հասկացել է։

Ես զգուշությամբ բացեցի Նվարդի պատասխանը ու կարդացի.

«Շնորհակալություն։ Դու լավ տղա ես»։

Այդ բառերից ես մի լավ ու սիրելի բան զգացի։ Արևի շողը իջավ տետրակի վրայից։ Արան աղմուկով ոտքի թռավ ու ես հասկացա, որ դասը վերջացել է։ Մենք դուրս եկանք։

Ես փորձեցի սահել, բայց բան չստացվեց։ Ձյունը արդեն հալվում էր։ Արան ձնից գունդ սարքեց ու խփեց աղջիկներից մեկին։

Իսկ ես հանուն իմ լավ զգացմունքի, որոշեցի այսօր աղջիկներից ոչ մեկին չնեղացնել։ Դրա համար էլ առա ձնագունդը և խփեցի պատին։ Պատի վրա սպիտակ հետք մնաց։ Հետո հետքերը դարձան երեք, հինգ և վերջապես յոթ հատ։ Այդ ժամանակ էլ ես հոգնեցի և իմ մարտական թափը իջավ։

— Ցտեսությո՛ւն,— ասաց Արան։

— Ցտեսությո՛ւն,— կրկնեցի ես։

— Մինչև վաղը։

Ես էլ ասացի.

— Մինչև վաղը։

Իսկ վաղը նորից կարելի է վերարկու չհագնել։ Ես նայեցի վերարկուիս թևերին։ Գիշերը մայրիկը երկարացրել է դրանք, և թևերի եզրերը հիմա ավելի մուգ են։

Դա նշանակում է, որ ես իսկապես մեծացել եմ։

## Թե կարող եք, մեզ գտեք

ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ

Մեր ճամբարից մի քիչ վեր
Կան գույնզգույն ծաղիկներ.
Այս ծաղկանց մեջ խնկաբույր
Կա՛ սառնորակ մի աղբյուր.
Աղբյուրի մոտ
Մի ծառ կա,
Կողքին մամռոտ
Մի քար կա.
Այն մամռապատ քարի տակ
Թողել ենք մենք մի նամակ...
Նամակում բան չենք գրել,
Այլ՝ նշաններ ենք արել,
Նշաններ, որ ծանոթ են
Եվ շատերը լավ գիտեն։
Թե ուր ենք մենք,
Այդ մասին
Մեր նամակը
Ձեզ կասի։
Թողած նամակը բացեք,
Ուշի-ուշով նայեցեք,
Նշանները լավ դիտեք,
Թե կարող եք՝ մեզ գտեք...





## ԳԻՇԵՐՆ ԱՆՏԱՌՈՒՄ

ՆԱԶԱՐԵԹ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Մութը վրան է գարկել,
Լռություն է տարածում,
Բնում շլդիկն է պառկել,
Այծյամն էլ չի արածում։

Լուսինն էլ չի երևում,
Սև ամպերն են պարուրել.
Սոված գայլը մութ ձորում
Մի մութ նրագ է վառել։

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ




Նկ. ՄԱՆՈՒԿ ՂՐԴՅԱՆԻ

(Անգլիական հեքիաթ)

Ժամանակով ապրում էին հինգ զարմանալի եղբայրներ։ Նրանք իրենց մոր հետ բնակվում էին ծովի ափին, մի փոքրիկ տնակում։ Եղբայրներն իրար այնքան էին նման, որ միմյանցից տարբերել հնարավոր չէր։ Նրանք կարողանում էին շատ զարմանալի բաներ անել։

Առաջին եղբայրը կարող էր խմել ամբողջ ծովի ջուրը և բռնել հրաշք-ձկնիկին, որն ապրում էր ծովի հատակում։ Նա երբեք ուռկան չէր օգտագործում. որսում էր միայն ձեռքով և մեն-մենակ։ Շատերն էին թախանձում, բայց նա ոչ մեկին չէր հայտնում այդ գաղտնիքը։ Քաղաքի բնակիչներին շատ էր դուր գալիս նրա որսած հրաշք-ձուկը և դրա համար էլ նրան մեծ գումար էին վճարում։

Առաջին եղբոր այդ շնորհքի շնորհիվ, նրա մայրն ու եղբայրները միշտ էլ շատ փող էին ունենում։

Երկրորդ եղբայրը չէր կարողանում իր եղբոր նման ցամաքեցնել ծովը և հատակից ձուկ որսալ։ Բայց նա այնքան ուժեղ էր, որ ոչ ոք չէր կարող նրա մի մազին դիպչել։ Նրա ձեռքերը, ոտքերը և նույնիսկ գլուխը շատ ամուր էին։ Նա կարող էր իր գլուխը կամ ձեռքերը մտցնել կոկորդիլոսների երախը և մնալ անվնաս։ Երկրորդ եղբայրն աշխատում էր կենդանաբանական այգում։

Երրորդ եղբայրն ուրիշ շնորհք ուներ։ Նա կարողանում էր ոտքերը երկարել այնքան, որքան ուզում էր։ Նա կարող էր ոտքերը հասցնել մինչև ծովի հատակը և այնքան ձգվել, որ տեսներ ծառերի գագաթը։

Չորրորդ եղբայրը նույնքան զարմանալի էր, որքան առաջին, երկրորդ և երրորդ եղբայրները։ Նրան ոչ մի կրակ չէր այրում։ Նա խարույկ էր սարքում և հանգիստ քնում մեջը։ Մի անգամ հրդեհ ընկավ այն տունը, որտեղ քնած էր չորրորդ եղբայրը։ Առավոտյան, երբ նա արթնացավ, շատ զարմացավ. տունը խսպառ չքացել էր, իսկ իրեն ոչինչ չէր պատահել։

Հինգերորդ եղբայրը նույնպես զարմանալի էր։ Նա չէր կարող խմել ամբողջ ծովի ջուրը, այնպես ուժեղ չէր, ինչպես երկրորդ եղբայրը։ Նա չէր կարող երկարել ոտքերը մինչև ծովի հատակը, բայց հինգերորդ եղբայրը կարող էր ապրել առանց օդի։ Նա մի քիչ նման էր չորրորդ եղբորը. սիրում էր լինել տաք տեղերում, բայց ոչ կրակի մեջ, կրակը կարող էր այրել նրան։

Հինգ եղբայրները երկար ժամանակ համերաշխ ապրում էին իրենց մոր հետ և բարեխիղճ աշխատանքով հոգում ընտանիքի ապրուստը։

Միայն մի բան կար, որ անհանգստացնում էր հինգ եղբայրներին։ Ամեն անգամ մարդիկ խնդրում էին, որ առաջին եղբայրը ցույց տար, թե ինչպես է ինքը ձուկ բռնում։ Բայց նա չէր ուզում իր գաղտնիքը հայտնել ուրիշներին։

Մի գիշեր մի քանի մարդ կանգնեցրին առաջին եղբորը։ Նրանցից մեկն ասաց.

— Մենք մի քանի անգամ է խնդրում ենք քեզ, որ մեր տղաներին սովորեցնես, թե ինչպես պիտի ձուկ որսալ, բայց դու չես ուզում կատարել մեր խնդիրքը։ Մենք այլևս չենք սպասի. սաա, եթե ոչ՝ մենք քեզ կբանտարկենք։

— Ես հիմա շատ եմ հոգնած,— տեսնելով, որ ուրիշ ելք չկա՝ ասաց նա։— Վաղը առավոտյան ձեր որդիներին ուղարկեք ինձ մոտ։

Մյուս առավոտյան այդ մարդկանց որդիներն ու առաջին եղբայրը միասին գնացին դեպի ծով։

— Դուք իսկապե՞ս ուզում եք իմանալ, թե ինչպես եմ բռնում այդ հրաշք-ձուկը,— հարցրեց նա։

— Այո, շատ ենք ուզում,— պատասխանեցին նրանք։

— Շատ լավ,— ասաց եղբայրը,— ես կխմեմ ամբողջ ծովի ջուրը և կպահեմ այնքան ժամանակ, մինչև դուք ծովի հատակի ձուկը հավաքեք: Բայց ես չեմ կարող ջուրը երկար պահել: Քանի որ ես այդ ժամանակ խոսել չեմ կարողանա, ձեռքով նշան կանեմ, որ անմիջապես դուրս գաք ծովից: Մի ակնթարթ անգամ ավելի չպետք է մնաք. շատ վտանգավոր է: Ուշադիր եղեք:

— Մենք կհետևենք քո ազդանշանին և անմիջապես դուրս կգանք,— ասաց տղաներից մեկը,— դե շուտ խմիր ջուրը, մենք արդեն հոգնել ենք սպասելուց:



Առաջին եղբայրը խմեց ամբողջ ջուրը, իսկ նրանք վազելով իրենց գցեցին ծովի հատակը: Հրճվանքի մեջ էին. ծիծաղում ու խոսում էին հրաշք-ձկան, իրենց աչքերով տեսած այլ զարմանալի բաների մասին և մոռացան ամեն ինչ:

Առաջին եղբայրը անհամբեր հետևում էր նրանց գործողություններին: Բայց տղաները բոլորովին մոռացել էին նրա գոյության ու ազդանշանի մասին: Հինգ րոպեից հետո նա սկսեց հոգնել. այլևս չէր կարող ծովը պահել իր բերանում: Նա ազդանշան տվեց: Բայց տղաները վերև չնայեցին: Նրանք զբաղված էին ձուկ հավաքելով:

Առաջին եղբայրը երեք անգամ կրկնեց ազդանշանը: Նա արդեն ուժասպառ էր լինում, իսկ տղաներից ոչ մեկը վերև չէր նայում:

Առաջին եղբայրը աննախանձելի դրության մեջ էր: «Ինչ անեմ,— ասաց նա ինքն իրեն:— Նրանք չեն նայում իմ կողմը, չեն տեսնում իմ ազդանշանը: Հիմա մի սարսափելի բան կպատահի տղաներին և ես չեմ կարող օգնել, ի՞նչ պատասխան տամ նրանց ծնողներին»:

Առաջին եղբայրը բարձրացրեց իր երկու ձեռքերը նորից ազդանշան տվեց: Բայց դարձյալ ոչ ոք չնկատեց: Դա վերջին ազդանշանն էր, նա այլևս չէր կարող ծովը պահել իր բերանում և ջուրը բաց թողեց: Տղաները մնացին ջրի տակ և խեղդվեցին:

Առաջին եղբայրը փորձեց մի անգամ էլ խմել ամբողջ ջուրը, բայց նա այնքան հոգնած էր, որ չկարողացավ:

Առաջին եղբայրը տխուր-տրտում վերադառնում էր քաղաք: «Ի՞նչ պիտի ասեմ քաղաքում ինձ սպասող մարդկանց,— մտածում էր նա ամբողջ ճանապարհին,— ինչպես պատմեմ նրանց, թե ինչ պատահեց այնտեղ՝ ծովի հատակում: Իրենց որդիների կորստյան համար նրանք երբեք չեն ների ինձ»:

Երբ նա քաղաք հասավ, մարդիկ հարցրին.

— Որտե՞ղ են մեր որդիները, նրանք ձուկ որսացի՞ն:

Առաջին եղբայրը ստիպված եղավ ամեն ինչ պատմել նրանց: Մարդիկ սաստիկ զայրացան և նրան տարան դատավորի մոտ: Երբ դատավորը լսեց պատմությունը, նա ինչպես շատ զայրացավ:

— Վաղը մենք կգլխատենք քեզ,— ասաց նա:

— Դա շատ վատ լուր է,— ասաց առաջին եղբայրը,— միայն մի բան եմ խնդրում. թույլ տվեք այս գիշեր տուն գնամ: Ես ուզում եմ մի անգամ էլ տեսնել իմ ծեր մորը և ասել նրան, որ դուք կտրելու եք իմ գլուխը:



— Թույլ իմ տալիս, կարող եք գնալ,— ասաց դատավորը։

Առաջին եղբայրը գնաց տուն և ամեն ինչ պատմեց իր մորը։

— Դու այնտեղ չես գնա,— ասաց մայրը։ — Այդ կատաղած մարդիկ խսկույն կկտրեն քո գլուխը։

Խելացի ծեր կինը կանչեց իր երկրորդ որդուն։

— Դու պետք է գնաս քո եղբոր փոխարեն,— ասաց մայրը։— Դատավորը կմտածի, որ դու առաջին եղբայրն ես, որովհետև դու նման ես նրան։ Դու գիտես, որ նրանք չեն կարող կտրել քո գլուխը. դու այնքան ուժեղ ես, որ ոչ մի բան չի կարող քեզ մարմնական վնաս պատճառել։

— Դու ճիշտ ես,— ասաց երկրորդ եղբայրը և առավոտյան գնաց դատարան։

Մարդիկ նրան առաջին եղբոր տեղ ընդունեցին։

— Գլխատե՜լ նրան, գլխատե՜լ,— բղավում էր զայրացած ժողովուրդը։

Բայց ոչինչ չպատահեց։ Ոչ որ և ոչ մի բանով չկարողացավ կտրել այդ ուժեղ գլուխը։ Մարդիկ կատաղել էին. նրանք մեղադրյալին ետ տարան դատարան։

— Գցեք ծովը,— բղավեցին նրանք,— Թող խեղդվի, ինչպես մեր որդիներն են խեղդվել։

— Վաղը մենք նրան կգցենք ծովը և կխեղդենք, — ասաց դատավորը։

— Խնդիրք ունեմ, դատավոր,— ասաց երկրորդ եղբայրը,— Թույլ կտա՞ք գնամ տեսնեմ իմ ծեր մորը։ Նա կարծում է, որ դուք կգլխատեք ինձ։ Ես ուզում եմ պատմել նրան, որ գլխատելու փոխարեն դուք պետք է ինձ ծովը նետեք և խեղդեք։

— Կարող ես գնալ,— ասաց դատավորը։— Բայց կվերադառնաս այստեղ վաղն առավոտյան։

Երկրորդ եղբայրը գնաց տուն և ամեն ինչ պատմեց մորը։ Մայրը շատ զայրացավ։

— Նրանք չեն կարող քեզ գցել ծովը և խեղդել, — ասաց նա ու կանչեց երրորդ եղբորը։— Փոխարինիր եղբորդ,—ասաց խելացի մայրը։— Նրանք քեզ կգցեն ծովը, բայց դու չես խեղդվի, կերկարես՝ ոտքերդ և գլուխդ կպահես ջրից վեր։ Նրանք երբեք չեն կարող քեզ խեղդել։

Այսպես երրորդ եղբայրը փոխարինեց երկրորդ եղբորը։ Նա եկավ դատավորի մոտ, և բոլորը նրան նորից ընդունեցին որպես առաջին եղբայր։ Դատավորն ու մի քանի մարդիկ երրորդ եղբորը նավակով տարան հեռու՝ դեպի ծովի խորքը։ Դատավորը հարցրեց.

— Ինչքա՞ն է խոր այստեղ։

— Շատ խորն է,— ասաց մարդկանցից մեկը։

— Գցիր նրան նավակից,— ասաց դատավորը,— Թող խեղդվի ինչպես ձեր որդիներն են խեղդվել։

Այսպես նրանք նավակից գցեցին երրորդ եղբորը և իրենք վերադարձան քաղաք։

Երրորդ եղբայրը սկսեց երկարել իր ոտքերը և հասցրեց ծովի հատակին։ Երբ դատավորը ետ նայեց ու տեսավ, որ նրա գլուխը ջրից դուրս է, շատ զայրացավ։

—Ետ դարձեք և նրան բերեք այստեղ,— ասաց նա։

Մարդիկ երրորդ եղբորը քաշեցին նավակի մեջ։

— Ի՞նչ անենք հիմա,— հարցրեց դատավորը։— Մենք չենք կարող խեղդել նրան։

— Գցեք նրան կրակի մեջ,— ասաց այդ մարդկանցից մեկը։— Նա իր գլուխը կպահի կրակից դուրս, բայց կրակը, միևնույն է, կայրի նրան։

— Սպասենք մինչև վաղը,— ասաց դատավորը։

— Կարո՞ղ եմ գնալ իմ ծեր մորը տեսության։ Նա կարծում է, որ դուք խեղդելու եք ինձ։ Ես պետք է նրան ասեմ, որ խեղդելու փոխարեն դուք ուզում եք ինձ գցել կրակի մեջ։

— Կարող ես գնալ,— ասաց նրան դատավորը։ — Բայց կվերադառնաս վաղը առավոտյան։

Այսպես երրորդ եղբայրը գնաց տուն։ Մայրը կանչեց չորրորդ եղբորը և ասաց.

— Կրակը չի կարող այրել քեզ, դու պետք է գնաս եղբորդ փոխարեն։

Մյուս առավոտյան չորրորդ եղբայրը եկավ դատավորի մոտ։ Եվ նորից ո՛չ դատավորը գլխի ընկավ, թե ինչ էր կատարվել, և ո՛չ էլ մյուս մարդիկ, քանի որ եղբայրներն իրար շատ էին նման։ Նրանք մի մեծ խարույկ վառեցին և չորրորդ եղբորը գցեցին կրակի մեջ։



— Սա կլինի նրա վերջը,— ասաց դատավորը։

Այս խարույկը մեծ չէ ինձ համար,— ասաց չորրորդ եղբայրը,— խնդրեմ սարքեք ավելի մեծ խարույկ։

Ժողովուրդը խարույկն ավելի մեծացրեց։

— Ա՛յ, սա իսկական խարույկ է,— ասաց չորրորդ եղբայրը, ժպտաց մարդկանց և կանգնեց բոցերի մեջ մինչև խարույկը հանգավ։

— Ի՞նչ անենք հիմա,— հարցրեցին մարդիկ։

— Կա միայն մի բան, որ կարող է մեզ օգնել ազատվելու նրանից,— ասաց դատավորը։

— Մենք նրան կտեղավորենք մի մեծ կարկանդակի մեջ և հետո այդ կարկանդակը կդնենք շիկացած վառարանի մեջ։

— Բայց կրակը չի այրի նրան,— ասաց մեկը։

— Վառարանում նա չի կարող շնչել, օդ չի լինի,— ասաց դատավորը։— Դա կլինի նրա վերջը, չէ՞ որ ամեն ոք օդի կարիք է զգում։



## ՓՈՔՐԻԿ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԸ

ԼՅՈՒԴՎԻԳ ԴՈՒՐՅԱՆ

Տաս տարեկան է թեև Արան,
Սակայն բոլորը գիտեն նրան,
Թե մեծ, թե մանուկ ասում են՝ տե՛ս,
Գալիս է Արան գյուղատնտես։
Այգին է գնում նա դպրոցի
Եվ այնտեղ ուրախ անցնում գործի։
Անթիվ ծառեր են այգում աճում,
Բայց ամեն ծառը նա ճանաչում
Ու մոտենում է խոր հարգանքով։
Զինվորների պես՝ կանաչ շարքով,
Իրենց ճյուղերը մեղմ օրորում,
Ծառերն են նրան դիմավորում,
Եվ ամեն ծառի նա անխտիր
Նայում է երկար և ուշադիր,
Որ տեսնի՝ արդյո՞ք չկա թրթուր
Կամ թե ո՛ր ծառն է դեռ աճում թույլ,
Որ սնի նորից, նորից բուժի,
Որ այգում ոչ մի ծառ չտուժի։
Ժպտում է, որ ծառն իր պատվաստած
Տվել է արդեն հյութալի տանձ,
Որ դալար այգին այդ բովանդակ
Կքվել է մրգի ծանրության տակ։
Տաս տարեկան է թեև Արան,
Սակայն բոլորը գիտեն նրան,
Թե մեծ, թե մանուկ ասում են՝ տե՛ս,
Այս մեր Արան է գյուղատնտես։

Դատավորը շատ էր զայրացած։

— Որպեսզի մենք կրակ վառենք և շիկացնենք վառարանը, մի ամբողջ օր է հարկավոր,— ասաց մեկ ուրիշը։

Հետո խոսեց չորրորդ եղբայրը.

— Մինչ դուք սարքեք կարկանդակը և շիկացնեք վառարանը, ես կարո՞ղ եմ գնալ տուն, որ վերջին անգամ տեսնեմ իմ ծեր մորը։

— Կարող ես,— ասաց դատավորը,— բայց պետք է վերադառնաս ժամանակին։

Երբ չորրորդ եղբայրը գնաց ու ամեն ինչ պատմեց իր մորը, մայրը կանչեց հինգերորդ եղբորը և ասաց.

— Հինգերորդ որդիս, դու պետք է փոխարինես եղբորդ։ Նրանք քեզ կդնեն վառարանի մեջ, բայց քեզ ոչ մի վնաս չի հասնի։ Դու սիրում ես լինել այնտեղ, որտեղ տաք է և օդի կարիք չես զգում։

Երբ հինգերորդ եղբայրը վերադարձավ, ժողովուրդը նրան դրեց կարկանդակի մեջ և այն տեղավորեց շիկացած վառարանում։

— Հիմա մենք վերջապես կազատվենք նրանից,— ասացին մարդիկ։

Մյուս առավոտյան մարդիկ վառարանից դուրս հանեցին կարկանդակը և կտրեցին։ Դուք կարո՞ղ եք պատկերացնել նրանց զարմանքը, երբ հինգերորդ եղբայրը դուրս թռավ կարկանդակից բոլորովին անվնաս։

— Այդ վառարանը լավ տեղ է քնելու համար,— ասաց նա,— ճիշտ է, օդ չկար, բայց ես օդի կարիք չեմ զգում։

Հետո դատավորն ասաց.

— Մենք փորձեցինք այս մարդուն գլխատել, խեղդել, այրել խարույկի վրա, փորձեցինք խեղդամահ անել շիկացած վառարանում, բայց իզուր։ Ուրեմն այս մարդը շատ լավ մարդ է, և մենք չենք կարողանում մի վնաս տալ նրան։

— Բայց նրա պատճառով մենք զրկվեցինք մեր որդիներից,— ասաց մի մարդ։

— Ո՞վ խնդրեց նրան, որ ձեր որդիներին ցույց տա, թե ինչպես պետք է ձուկ որսալ,— հարցրեց դատավորը։

— Մենք,— միաբերան ասացին հավաքվածները։

— Նա ուզո՞ւմ էր ցույց տալ,— հարցրեց դատավորը։

— Ո՛չ։ Բայց մենք ստիպեցինք։ Մենք սպառնում էինք բանտարկել նրան։

— Որ այդպես է, նա մեղք չունի։ Ես կարծում եմ այժմ նրան պետք է ազատ արձակել, որ գնա տուն, իր ծեր մոր մոտ,— ասաց դատավորը։ — Դա կլինի ճիշտ վճիռ։

— Այո՛, այո՛, ասաց ամբողջ ժողովուրդը։

— Դու ազատ ես,— ասաց դատավորը հինգերորդ եղբորը։— Կարող ես գնալ։

Այսպիսով, հինգերորդ եղբայրը գնաց տուն, իր ծեր մոր ու եղբայրների մոտ։ Նրանք ապրեցին միասին ուրախ ու երջանիկ, շարունակ օգնելով մեկը մյուսին։

*Անգլերենից թարգմանեց*

*ՍԻԼՎԱ ԱՍԼԱՄԱԶՅԱՆԸ*

---

*ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ*

## ՆԵՐԻՆ

Ծաղկունքով պատած ձորի եզրերին
Կուշտ կերած ներին,
Երբ տուն է դառնում առույգ և ուրախ,
Մի երկու փուշ է տեսնում ժայռից կախ
Եվ այն կողմ վազում. բայց թավալգլոր
Ընկնում է ձորը խորն ու ահավոր։
Ինչու՞ ափսոսալ, որ անկուշտ ներին
Բաժին է դառնում սոված գայլերին։
Առակիս միտքը թե պարզ հասկացաք,
Կյանքում չեք լինի երբեք աչքածակ։





## ԿՈՏՐԱԾ ԱԹՈՌԸ

— Տղա՛ս, մի՛ նստիր կոտրած աթոռին,
Մուրճն ա՛ռ, դրստի՛ր,
Նոր միայն նստիր...—
Ասում է մի օր տատը իր թոռին։
Չի լսում սակայն թոռնիկը տատին,
Ընկնում ու գլուխն առնում է պատին։
— Այդպես կլինի,— կասեն բոլորը,—
Կոտրած աթոռին նստողի օրը։

# ԼՈՒՍԱՄՈՒՏԸ ԵՎ ՋԻՆ



ԻԼՈՆԱ ՄՈԼՆԱՐ
(ՀՈՒՆԳԱՐ ԳՐՈՂ)

# ԼՈՒՍԱՄՈՒՏԸ ԵՎ ՁԻՆ

ՊԻԵՍ ՏԻԿՆԻԿԱՅԻՆ ԹԱՏՐՈՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ԸՍՏ ԹՈՐՐ. ՇԱՆԴՈՐԻ ԳՐՔԻ

## ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՆՔ

*ՋԻԼԻՉՅԱՆ—կենդանի արտիստ*
*ՏԻԿՆԻԿՆԵՐ*
*ՎԱՉԻԿ—4-րդ դասարանի աշակերտ*
*ԱՐՄԵՆ—Վաչիկի դասընկերը*
*ՎԱԶԳԵՆ—Վաչիկի փոքր եղբայրը*
*ՎԱՉԻԿԻ ՀԱՅՐԸ*
*ՎԱՉԻԿԻ ՄԱՅՐԸ*
*ՎԱՉԻԿԻ ՏԱՏԸ*
*ՈՒՍՈՒՑԻՉ*
*ՊԵԳԱՍ—ձի*

Ներկայացումից առաջ բեմում երևում է միայն շիրման: Շիրմայի հետևում՝ սև վարագույր, ոչ մի դեկորացիա: Դահլիճի առաջին շարքի աթոռներից մեկն ազատ է: Աթոռի վրա կա սպիտակ թուղթ, որի վրա մեծ-մեծ տառերով գրված է. «Խնդրում ենք չզբաղեցնել. այստեղ պետք է նստի քեռի Ջիլիչյանը»: Երբ բոլորը նստում են իրենց տեղերը, բացվում է նեմասրահի դուռը և դահլիճ է մտնում քեռի Ջիլիչյանը՝ ձեռքին մի մեծ պայուսակ:

ՋԻԼԻՉՅԱՆ.— (քայլում է դահլիճի միջով) *Հրա՜շք, հրա՜շք, ո՞վ է հրաշք ուզում: Ես նշանավոր կախարդ Ջիլիչյանն եմ: Ամեն տեսակի հրաշք ունեմ: Չքացող փուչիկներ և հայտնվող մոմակներ: Մի փոքրիկ ճնճղուկը դառնում է մի երամ աղավնի: Ունեմ պարող խեցգետիններ և թռչող շներ, խոսող ու երգող ձիեր, նույնիսկ ունեմ տղաներ, որոնք ոչ մի բառ սուտ չեն ասում*



(բարձրանում է բեմ: Կանգնում է շիրմայի մոտ և պայուսակը դնում նրա վրա): *Անա՛, այդ բոլոր հրաշքներն այստե՛ղ են: Հիմա մեկ-մեկ կհանեմ ու ցույց կտամ* (պայուսակը դնում է շիրմայի հետևը: Ճիչ, ծղրտոց, երաժշտություն: Շիրմայի վերևում ոստոստում են ինչ-որ առարկաներ. մերթ՝ դեկորացիաներից հատվածներ, մերթ էլ՝ տիկնիկներ): *Դժբախտությո՜ւն, դժբախտությո՜ւն. բոլոր հրաշքները թափվեցին: Հո՛պ, զզվա՛ստ* (ամեն ինչ միանգամից լռում է): *Ա՛յ, այդպե՜ս: Հրաշքները ցույց կտամ հերթականությամբ, ոչ թե բոլորը միանգամից: Երաժշտությո՜ւն* (լսվում է քսիլոֆոնի և թմբուկի ձայն): *Շատ լավ է. սա կլինի մեր երաժշտությունը: Իսկ հիմա խնդրում եմ վեր ելնեն մեր հրաշք-ներկայացման երկու գլխավոր հերոսները* (երկու անգամ ծափ է տալիս, և շիրմայի վրա երևում են Վաչիկն ու Արմենը): *Անա՛, ծանոթացե՛ք: Սա Վաչիկն է, սա էլ Արմենը: Նրանք սովորում են Երևանի դպրոցներից մեկում, 4-րդ դասարանում: Դե* (դիմելով Վաչիկին ու Արմենին), *վազե՛ք ձեր տեղերը* (տիկնիկները օրորվելով գնում են): *Առաջին պատկերի դեկորացիա՛, խնդրե՛մ* (աջ կողմից երևում է դպրոցական շենքի ճակատային մասը): *Իսկ ես կգնամ կնստեմ իմ տեղը և նույնպես կնայեմ ներկայացումը: Ինչ անեն-չանեն՝ էլ չեմ խառնվի նրանց գործերին* (նստում է իր տեղը): *Այսպիսով ներկայացումն սկսված է:*

Շիրմայի վրա երևում է Վաչիկը: Նա մի քիչ սնապարծ է և անվերջ սուտ է խոսում: Համարյա թե խուլիգան է: Նա քայլում է մեջքով դեպի հանդիսատեսը և շրթնահարմոն նվագում: Ապա շրջվում է դեպի դահլիճը, ուշադիր նայում նստածներին և շվացնում: Հետո նորից սկսում է շրթնահարմոն նվագել՝ արդեն հանդիսատեսի համար: Ապա նվագելը դադարեցնում է:

ՎԱՉԻԿ.— *Հը՞, ինչպե՞ս էր:*

ԱՐՄԵՆ.— (հետևից աննկատ մոտենում է և ուժեղ խփում Վաչիկի գլխին) *Անպետքություն էր:*

ՎԱՉԻԿ.— (կայծակնային արագությամբ շուռ է գալիս և խփում Արմենի քթին) *Դու արվեստից ոչինչ չես հասկանում:*

ԱՐՄԵՆ.— *Չեմ հասկանո՞ւմ:*

ՎԱՉԻԿ.— *Իհարկե, ոչ:*

ԱՐՄԵՆ.— *Դե այստե՛ղ նայիր* (խնձորը նետում է վեր, ապա ցատկում ու գլխով բռնում): *Ի՞նչ: Ասում ես, թե արվեստից բան չեմ հասկանո՞ւմ:*

ՎԱՉԻԿ.— *Ա՛յ, հիմա ինչ եմ ասե՜լ:*

ԱՐՄԵՆ.— *Խնդրե՜մ:*

ՎԱՉԻԿ.— *Սպասիր խփեմ ցած գցեմ խնձորը* (հանում է մի մեծ ճեղապարսատիկ):

ԱՐՄԵՆ.— (գլխի վրայից ցած գցելով խնձորը) *Ո՛չ, ավելի լավ է ինքս գցեմ:*

ՎԱՉԻԿ.— *Հը՞, հոտած խնձորիդ համա՞ր վախեցար: Ես քեզ վաղը դրանից երկու հատ կբերեմ:*

ԱՐՄԵՆ.— *Իսկ ուրիշ աչք կարո՞ղ ես բերել: Կամ ուրիշ ատամ: Կամ ուրիշ քիթ: Եվ*

այն էլ այնպիսի չափսի, ինչպիսին իմն է։ Գիտե՞ս ինչ։ Դու խնձորը դիր գլխիդ, իսկ ես խփեմ գցեմ։

ՎԱՉԻԿ.— Իմ պարսատիկո՞վ։ Տես, թե ինչե՜ր են մտքից անցնում։ Իսկական տղամարդը երբեք ձեռքից բաց չի թողնի իր զենքը (հերոսի կեցվածք ընդունելով)։ Բայց դու վախկոտ ես... Խնձորդ նետիր օդի մեջ, իսկ ես խփեմ։

ԱՐՄԵՆ.— Օդի մե՞ջ։

ՎԱՉԻԿ.— Ի՞նչ կա որ։

ԱՐՄԵՆ.— Տեսնենք։ Մեկ... երկու... երե՜ք... (մի քանի խաբուսիկ շարժումներ է անում և վերջապես նետում է խնձորը։ Վաչիկն արագորեն խփում է պարսատիկով)։

ՎԱՉԻԿ.— Դիպա՜վ։

Ջարդվող ապակու ձայն։ Հետո լռություն։ Տղաները ապուշ կտրած նայում են իրար։ Հանկարծ Արմենը շուռ է գալիս և փախչում։ Բախլոֆոնը բարձր ձայնով ընդգծում է նրա վազքի ռիթմը։ Այնուհետև լսվում է քսիլոֆոնի դանդաղ, բասային ձայնը. ուսուցիչը մոտենում է լուսամուտին։ Նա այս ու այն կողմն է նայում և դժգոհ շարժում գլուխը։

Վաչիկն անսովոր ուշադրությամբ նայում է դեպի աջ, նայում դեպի ձախ, բայց լուսամուտի կողմը չի նայում։

ՈՒՍՈՒՑԻՉ.— Ես այստեղ եմ, տղաս։ Պետք չէ ինձ փնտրել ո՛չ մարմնամարզական դահլիճում, ո՛չ էլ ցանկապատի վրա։ Ես այստեղ եմ, ուսուցչանոցում։

ՎԱՉԻԿ.— (շինծու զարմանքով շրջվում է դեպի ուսուցիչը) Ահա թե՞ որտե՜ղ եք դուք, ընկե՛ր Գասպարյան։ Բարի օր (սիրալիր ու միամիտ)։ Ի՞նչ եք կամենում, որ անեմ։

ՈՒՍՈՒՑԻՉ.— Ոչինչ։ Նայում եմ, թե ո՞վ ջարդեց լուսամուտը։

ՎԱՉԻԿ.— (արագ-արագ խոսելով) Լուսամո՞ւտը։ Ափսո՜ս։ Կարծես նախազգում էի։ Ես այնտեղ էի... փողոցում։ Դասերից հետո ես անմիջապես տուն չգնացի, որովհետև մի պառավի ու մի կույր կնոջ անցկացրի մյուս մայթը։ Եվ գիտե՞ք ինչ, ոչ թե երկուսին միանգամից, այլ առանձին-առանձին... Սկզբում պառավին, իսկ հետո կույրին...

ՈՒՍՈՒՑԻՉ.— Հետո՞...

ՎԱՉԻԿ.— Ուրիշ ոչինչ։ Սկզբում անցկացրի պառավին, իսկ հետո՝ կույր կնոջը։ Եվ հանկարծ լսեցի թրխկոց... զնգոց... Ասես ողնաշարիս միջով սառնամանիք անցավ։ Վա՜յ, ասացի ինքս ինձ, միայն թե դպրոցում մի դժբախտություն պատահած չլինի։ Գլխապատառ վազեցի բակ և... (կմկըմում է)։ Ճի՞շտ եք ասում, որ ջարդել են լուսամուտը։

ՈՒՍՈՒՑԻՉ.— Դո՞ւ ջարդեցիր։

ՎԱՉԻԿ.— Ե՞ս... Ինչպե՞ս կարող եք դուք այդպիսի բան մտածել։

ՈՒՍՈՒՑԻՉ.— (ցույց տալով Վաչիկի ձեռքի՝ նետապարսատիկը)։ Իսկ դրանով ի՞նչ ես փնտրում այստեղ։

ՎԱՉԻԿ.— (ուշադրությամբ նայելով նետապարսատիկին) Օյ-օյ-օ՜յ։ Իսկ ես չեմ էլ նկատել։ Խնդրում եմ հավատաք, որ սա իսկական պարսատիկ չէ... Սա... այսինքն... նման է... ինչպե՞ս ասեմ... այսինքն...

ՈՒՍՈՒՑԻՉ.— Մի խոսքով, պարսատիկի նման է։ Բայց իրականում բոլորովին այլ բան է. շորի կախիչ կամ հատակմաքրիչ։ Սական ավելի շատ դա նման է նետապարսատիկի (փոխելով ձայնի տոնը)։ Իսկ այժմ խնդրում եմ անցնենք դասարան, նստենք ու մտածենք, թե այնուամենայնիվ ո՞վ ջարդեց ուսուցչանոցի լուսամուտը։

Դպրոցի դեկորացիան դանդաղ իջնում է ներքև։ Վաչիկը մտախոհ կանգնում է տեղում։ Հետո շուռ է գալիս և գլխիկոր, շատ դանդաղ գնում է դեպի շիրմայի հակառակ անկյունը։ Թմբուկի ցածր հարվածներ։ Ներքևից բարձրանում են մի գրատախտակ, մի մեծ քարտեզ և մի աշակերտական նստարան։ Վաչիկը լուռ նստում է նստարանին և գլուխը մտածկոտ հենում ձեռքերին։ Լսվում է քսիլոֆոնի ցածր ձայնը։ Վաչիկը հանում է շրթնահարմոնը և սկսում է նվագել կամաց, թախծալի։ Հանկարծ հայտնվում է Արմենը։

ԱՐՄԵՆ.— Ի՞նչ ես անում այստեղ։

ՎԱՉԻԿ.— Չե՞ս տեսնում՝ ուրախանում եմ։

ԱՐՄԵՆ.— Ուսուցիչը տեսա՞վ։

ՎԱՉԻԿ.— Ըհը՛։

ԱՐՄԵՆ.— Անպայման ծնող կկանչեն։

ՎԱՉԻԿ.— Ո՛չ... ավելի շատ պարգև կտան... Ինչո՞ւ անպայման ծնող պիտի կանչեն։

ԱՐՄԵՆ.— Ա՛յ, եթե մեկը նոր ապակի գցե՜ր, այնպես, որ ասես թե ոչ ոք էլ չի ջարդել...

ՎԱՉԻԿ.— Թո՛ղ, ինձ մի՛ բարկացնի (նվագում է շրթնահարմոնով)։

ԱՐՄԵՆ.— Ախր իմ հայրը ապակեգործ է։ Ես գործիքներ կբերեի, ապակի. և կես ժամում ամեն ինչ լավ կլիներ, եթե...

ՎԱՉԻԿ.— Ի՞նչ «եթե»...

ԱՐՄԵՆ.— Եթե դու ինձ տայիր քո շրթնահարմոնը։

ՎԱԶԻԿ.— Մի ժամո՞վ։

ԱՐՄԵՆ.— Հիմար մի՛ ձևանա. ընդմիշտ։

ՎԱԶԻԿ.— Դա չի լինի։ Ավելի լավ է ես քեզ նվիրեմ թղթե անձրևոցիկների հավաքածուս։ Բացի դրանից, ես ուրիշ բան էլ ունեմ...

ԱՐՄԵՆ.— Դե ես գնացի...

ՎԱԶԻԿ.— Կանգնի՛ր... Սպասի՛ր... Ես քեզ կըտամ...

ԱՐՄԵՆ.— Ի՞նչ։

ՎԱԶԻԿ.— Ես քեզ կտամ... իմ ձին։

ԱՐՄԵՆ.— Ձի՞։ Իսկ որտե՞ղ է քո ձին։

ՎԱԶԻԿ.— Որտե՞ղ, որտեղ... Տանը։ Իսկ լուսամուտն ի՞նչ անենք։

ԱՐՄԵՆ.— Դրա համար մի՛ անհանգստանա։ Դու ինձ կտաս քո ձին, ես կբերեմ գործիքները և ամեն ինչ կանեմ։

ՎԱԶԻԿ.— Իսկ չի՞ կարելի առաջ լուսամուտը...

ԱՐՄԵՆ.— Ո՛չ։

Երկու տիկնիկներն էլ շուռ են գալիս, դեկորացիաները անհետանում են։ Տիկնիկները ձևացնում են, թե քայլում են։ Նրանց դեմից շարժվում





են ավտոմեքենաներ, տներ, տրամվայներ: Ի վերջո տղաները հանդիպում են Վաչիկի եղբորն ու տատիկին:

*ՏԱՏԻԿ.— Հը՛, Վաչիկ, էդ ինչո՞ւ էդպես ուշ ես վերադառնում տուն: Քեզ ոչինչ չի՞ պատահել:*

*ՎԱՉԻԿ.— Ինչե՞ր են անցնում մտքովդ, տատի՛կ: Ինձ ի՞նչ պիտի պատահի:*

*ՏԱՏԻԿ.— Այ դա լավ է: Դե վերցրո՛ւ դռան բանալին, իսկ ես պետք է էլի բան-ման գնեմ: Եղբորդ էլ տուն տար: Դե գնացե՛ք:*

Փոքրիկը բաց է թողնում տատիկի ձեռքը և բռնում է եղբոր ձեռքը: Տղաները սկսում են քայլել: Հանկարծ նրանք կանգ են առնում: Նրանց դեմ դուրս է գալիս մի բազմահարկ շենք:

*ՎԱՉԻԿ.— Ահա և եկանք:*

*ԱՐՄԵՆ.—* (կասկածանքով) *Դուք ապրում եք այսպիսի բարձր շենքո՞ւմ: Իսկ ձին ինչպե՞ս է բարձրացել:*

*ՎԱՉԻԿ.—* (հանգստացնելով) *Մենք ապրում ենք չորրորդ հարկում: Ախր, այդ ձին... Գիտե՞ս ինչպիսի ձի է:*

*ՎԱՉԴԵՆ.—* (կասկածոտ վստահությամբ կմկմում է) *Հա՛... հա՛... նրա ձին... դա մի այնպիսի ձի է, որ...*

*ՎԱՉԻԿ.— Գիտե՞ս ինչ, ախպերս, մեր դպրոցում ջարդվել է մի լուսամուտ, շատ կարևոր մի լուսամուտ: Արմենը կսարքի լուսամուտը, իսկ ես դրա համար նրան կտամ իմ ձին:*

*ՎԱՉԴԵՆ.— Եվ նա ձին պիտի տանի:*

*ԱՐՄԵՆ.— Անմիջապես:*

*ՎԱՉԴԵՆ.—* (լրիվ պատրաստակամությամբ) *Այդ դեպքում գնացինք:*

Շենքն սկսում է իջնել ներքև, շիրմայի հետևը: Նրա հետ միասին իջնում է նաև դրսի սանդուղքը: Տղաները բարձրանում են աստիճաններով: Քսիլոֆոնը մերթ ցածր, մերթ բարձր հնչյուններով պատկերում է նրանց ոտնաձայնը: Չորրորդ հարկում նրանք կանգ են առնում:

*ՎԱՉԻԿ.— Ահա և եկանք: Միայն թե մի րոպե սպասեք, ես մենակ գնամ խոսեմ հետը, հանգստացնեմ: Նա սարսափելի վախկոտ է: Ճիշտ չե՞մ ասում, ախպերս՛:*

*ՎԱՉԴԵՆ.—* (արձագանքում է հաստատ համոզված) *Հա-հա՛: Սարսափելի վախկոտ է:*

*ԱՐՄԵՆ.—* (հանգիստ ու կասկածամտությամբ) *Ի՞նչ է, ձիդ խոսե՞լ գիտե:*

*ՎԱՉԻԿ.— Իսկ ինչո՞ւ չպիտի գիտենար որ...*

*ՎԱՉԴԵՆ.— Ինչո՞ւ չպիտի գիտենար որ...*

*ՎԱՉԻԿ.— Դուք սպասեցե՛ք* (բացում է դուռը և ներս մտնում: Ափսեների ձայն, և տան պատերը ներքև են իջնում: Դրեթե ամբողջ շիրման զբաղեցնում է այն բնակարանի սենյակներից մեկը, որտեղ ապրում է Վաչիկը: Դրսում, սանդուղքի վրա, սպասում են եղբայրն ու Արմենը: Թմբուկի ցածր, խուլ հարվածներ: Դա նշանակում է, որ խիղճն է խոսում Վաչիկի ներսում: Հետո նա բափահարում է ձեռքը և սկսում է խոսել այնպես, որ իբր խոսում է ձիու հետ) *Միրելի՛ս, թանկագի՛նս...*

ՎԱԶԳԵՆ.— Սը՜սսս... Լսու՞մ ես։ Խոսում է։

ԱՐՄԵՆ.— Ո՞վ։ Ջի՞ն։

ՎԱԶԳԵՆ.— Ո՛չ, Վաչիկը։

ԱՐՄԵՆ.— Իսկ ի՞նչ է նրա անունը։

ՎԱԶԳԵՆ.— Ո՞ւմ։ Վաչիկի՞։

ԱՐՄԵՆ.— Չէ՛, ջինու։

ՎԱԶԳԵՆ.— Սը՜սսս... Դու միայն լսիր...

ՎԱՉԻԿ.— Ահա և քո տերը։ Քո փոքրիկ, բարի տերը դպրոցից է եկել (ականջ է դնում դռանը, ապա սկսում է ուժեղ թռչկոտել ու խրխնջալ)։ Դե-դե, հանգստացիր, թե չէ ուրախությունից դու ինձ ոտնատակ կանես։

ԱՐՄԵՆ.— (ուզում է մի կողմ հրել Վազգենին) Թո՛ղ։

ՎԱԶԳԵՆ.— (կպչում է Արմենին և չի թողնում, թեև Արմենը նրանից հասակով բարձր է) Կամա՛ց, կամա՛ց։ Դեռ չի կարելի։ Ջին շատ է խրտնում։ Սպասիր հանգստանա։

ՎԱՉԻԿ.— (նորից թռչկոտում է ու խրխնջում, հետո հիասթափված կանգնում) Ես որտեղի՞ց կարող եմ ձի ճարել և կամ ինչպե՞ս կարող եմ նրան տեղավորել այս փոքր բնակարանում։ Այստեղ առանց կախարդանքի բան դուրս չի գա (ձեռքը պարզում է դեպի դահլիճը և թենկթենկում)։ Քեռի՛ Ջիլիչալա, շուտ այստե՛ղ եկեք, շա՜տ եմ խնդրում (ցածր երաժշտություն։ Ապա ամեն ինչ լռում է և դահլիճում ոտքի է կանգնում քեռի Ջիլիչալան։ Նա մոտենում է շիրմային և բարեկամաբար դիմում Վաչիկին)։

ՉԻԼԻՉԱԼԱ.— Ահա և ես։

ՎԱՉԻԿ.— Կորած եմ։ Սիրելի՛ քեռի Ջիլիչալա, փրկե՛ք ինձ։ Դե ինչպես ասեմ ձեզ... դա շատ կարևոր լուսամուտ է, որը... դե...

ՉԻԼԻՉԱԼԱ.— Ես ամեն ինչ գիտեմ, ես այնտեղ էի։

ՎԱՉԻԿ.— Ինչ լա՜վ է։ Խնդրում եմ... Ձի...

ՉԻԼԻՉԱԼԱ.— Ես շատ եմ բարկացած քեզ վրա։

ՎԱՉԻԿ.— Ի՞նչ եք ասում, քեռի՛ Ջիլիչալա, եղած-չեղածը մի լուսամուտ է, դե, դա այնքան էլ մեծ բան չէ։ Բացի դրանից, ախր ես չէի ուզում...

ՉԻԼԻՉԱԼԱ.— Դա այնքան էլ մեծ դժբախտություն չէ։ Ամենազարշելին այն է, որ դու չխոստովանեցիր, չգիտակցեցիր կատարածդ արարքը։ Ամեն ինչ առաջ եկավ հենց դրանից։ Իսկ հիմա կանգնել ես այստեղ...

ՎԱՉԻԿ.— Ձի՜, աղաչում եմ, ձի՜...

ՉԻԼԻՉԱԼԱ.— Դու կարծում ես, թե ձին լինելու դեպքում ամեն ինչ կարգի՞ կընկնի։

ՎԱՉԻԿ.— Եթե այս մեկը կարգավորվի, մնացածը ինքս կանեմ։

ՉԻԼԻՉԱԼԱ.— Դե լավ, ձին կլինի։

ՎԱՉԻԿ.— Ճի՞շտ։ Հիմա՞ կլինի։

ՉԻԼԻՉԱԼԱ.— Այո, հենց հիմա (հանում է փայտիկը և կախարդական շրջան գործում օդի մեջ, մրմնջալով ինչ-որ աղոթք)։ Ջիլիչալա, չիլի-չէ, խոսքը շա՜տ է, գործը՝ չէ։ Հիմա կասեմ կախարդական մի խոսք և ամեն ինչ պատրաստ կլինի. հիպ-հո՛պ։

Ջիլիչալան շուռ է գալիս և հանգիստ գնում իր



տեղը: Միաժամանակ լսվում է թմբուկի հարվածներ, ափսեների զնգոց և քսիլոֆոնի հնչյուններ: Հանկարծ Վաչիկի առջև հայտնվում է մի գեղեցիկ, բաց շագանակագույն ձի՝ ճակատին աստղանշան: Ձին ու Վաչիկը լուռ իրար են նայում: Ձին վրնջում է: Վաչիկն ուրախությունից ձիու վզով է ընկնում:

ՎԱՉԻԿ.— *Ձի՛ ջան, սիրելի՜ ձի ջան:*

Արմենը հրում է Վաչիկի եղբորը և մտնում սենյակ: Նրան է հետևում Վազգենը:

ՎԱՉԻԿ.— (գոռոզաբար) *Խնդրեմ, սա է ձին:*

ԱՐՄԵՆ.— *Իմ սիրո՜ւն* (ուզում է բռնել):

ՎԱՉԻԿ.— (հրում է նրան) *Ձին իմն է, ձեռք մի՛ տա:*

ՎԱԶԳԵՆ.— *Վաչիկի ձին է, ձեռք մի՛ տա:*

ԱՐՄԵՆ.— *Քոնը լուսամուտն է, իմը՝ ձին:*

ՎԱՉԻԿ.— *Ո՛չ:*

ԱՐՄԵՆ.— *Ձին իմն է:*

ՎԱՉԻԿ.— *Ո՛չ, իմն է:*

Նրանք սկսում են գոռգոռալ: Նրանց է միանում Վաչիկի եղբայրը: Ձին խրխնջում է: Ի վերջո այդ ճղճղոցից զզված՝ ձին սկսում է իր համար ուրախանալ, վազվզել բնակարանում, տակնուվրա անելով ամեն բան: Սեղանը շուռ գալով՝ թռչում է մի անկյուն, պարանը բարձրանում է վեր: Հետո ձին կանգնում է տղաների արանքում և հետաքրքրությամբ նայում նրանց:

ՎԱՉԻԿ.— *Սրա նման մի ուրիշ ձի աշխարհում չկա: Նա այնպես արագ է վազում, որ ճեպընթաց գնացքից անցնում է: Ռեզինե գնդակի պես կարող է վեր թռչել: Իսկ եթե ուզում ես իմանալ, իմ ձին խոսել էլ գիտե:*

ԱՐՄԵՆ.— (զարմացած նայում է) *Խոսե՞լ:*

ՎԱՉԻԿ.— *Է՜, թող ախպերս ասի:*

ՎԱԶԳԵՆ.— *Էն էլ ո՜նց...*

ԱՐՄԵՆ.— *Ուրիշ մարդ գտիր, որ քեզ հավատա՝ Դու միշտ էլ փչում ես., էլի՜:*

ՎԱՉԻԿ.— *Դե մի բան հարցրու, տես, չի՞ պատասխանի:*

ԱՐՄԵՆ.— (սկզբում տատանվում է, հետո արագ մոտենում է ձիուն) *Անունդ ի՞նչ է* (ձին թափահարում է պոչը, ապա բարեկամաբար նայում Արմենին): *Գուցե ձիդ վա՞տ է լսում* (գոռում է բարձր ձայնով): *Անունդ ի՞նչ է* (քար լռություն: Բոլորը լարված ուշադրությամբ սպասում են: Ձին նորից շարժում է պոչը):

ՎԱԶԳԵՆ.— (մեծ դադարից հետո) *Նա ընդհանրապես խոսել գիտե՝ միայն թե այնքան էլ խոսել չի սիրում:*

ՎԱՉԻԿ.— *ճիշտն ասած, նա էդպիսին է. անծանոթ մարդու հետ սկզբում չի սիրում խոսել և...*



*Մի քիչ ամաչկոտ է: Այ, ես հիմա նրա հետ կխոսեմ... Միայն թե դուք հեռո՛ւ գնացեք, դո՜ւրս եկեք այստեղից* (եղբայրն ու Արմենը դուրս են գնում, կանգնում են դռան հետև և լարված սպասում: Վաչիկը գրկում է ձիու վիզը): *Քեզ թարմ խոտ կտամ, քեզ համար շաքար կբերեմ, քեզ մարմարե ախոռում կպահեմ: Դե խոսիր, էլի՜* (ձին կարծես թե ուսերն է բարձրացնում, Վաչիկը բաց է թողնում նրան և հուսահատ գոռում): *Քեռի՜ Չիլիչալա, քեռի՜ Չիլիչալա, խնդրում եմ այստե՛ղ գար:*

ՉԻԼԻՉԱԼԱ.—(կախարդական երաժշտության տակ մոտենում է շիրմային) *Ես այստեղ եմ, ի՞նչ ես ուզում:*

ՎԱՉԻԿ.— *Քեռի՛ Չիլիչալա, ախր էս ձին բոլորովին չի կարող խոսել:*

ՉԻԼԻՉԱԼԱ.— *Վաչի՛կ, չե՞ս գտնում, որ դու անամոթի մեկն ես: Ի՞նչ է, ես քեզ համար վա՞տ ձի եմ կախարդել:*



ՎԱՉԻԿ.— (Մի քիչ վախեցած) Ներողություն եմ խնդրում... բայց ախր խոսել չի կարող.

ՉԻԼԻՉԱԼԱ.— Դժբախտությունն այն չէ, որ ձիդ չի կարող խոսել, դժբախտությունն այն է, որ դու առեցիր, թե ձիդ կարող է խոսել:

ՎԱՉԻԿ.— Ես էլ մտածեցի, որ եթե կախարդական ձի է, ուրեմն անպայման խոսել էլ գիտե: Դուցե քեռի Չիլիչալյան չի՞ կարող այնպես կախարդել, որ ձին խոսի:

ՉԻԼԻՉԱԼԱ.— Ի՞նչ է, դու ինձ ստուգո՞ւմ ես:

ՎԱՉԻԿ.— Ո՜-ո-ո՜չ... Ես միայն կարծեցի, թե քանի որ դուք այստեղ եք, ապա ես ձեզ շատ կխնդրեմ, որ նրան սովորեք խոսել:

ՉԻԼԻՉԱԼԱ.— Դա ինձ համար դատարկ բան է: Բայց դրանցից մի այնպիսի չիլաչիլոթ կրատիգծվի, որ դու ինքդ կմոլորվես:

ՎԱՉԻԿ.— Կարող եք բոլորովին հանգիստ լինել:

ՉԻԼԻՉԱԼԱ.— Դե, թող այդպե՛ս լինի: Թող ձի՛ն խոսի (փայտիկով կախարդական շրջան է գծում օդի մեջ) Չիլի-չալա, չիլի-չլ, խոսքը շատ է, գործը՝ չէ: Հիմա կասեմ կախարդական մի խոսք և ամեն ինչ պատրաստ կլինի. հիպ-հո՛պ:

Հեռանում և հանգիստ նստում է իր տեղը: Առաջվա նման թմբուկի հարվածներ, ափսեի ու քսիլոֆոնի ձայն: Չին ու Վաչիկը շրջվում են և կանգնում դեմ-դիմաց: Վաչիկը մի քանի անգամ փորձում է խոսակցություն սկսել և չի կարողանում:

ՎԱՉԻԿ.— Ձի... ձի... շատ եմ խնդրում...

ՁԻ.— Ի՞նչ կհրամայեք:

ՎԱՉԻԿ.— Սիրելի ձի (դողդողացող ձեռքով թեթևակի խփում է ձիուն): Էսպես ուրեմն, ճիշտ է... Ուրեմն, ճիշտ է... Օ՜, դու կախարդական ձի ես... (վազում է դեպի դուռը և բաց անում): Արմե՜ն, Վազգե՜ն, եկե՛ք, շո՜ւտ: Խոսում է, խոսո՜ւմ:

ՁԻ.— (համեստորեն ետ է քաշվում, որպեսզի տղաները առաջ գան, ապա թափահարում է պոչը և խփում ջարդում է պատի ժամացույցը) Օ՜, փոքրիկ եղբայրիկդ էլ է այստեղ:

ՎԱԶԳԵՆ.— (խոնարհվելով) Մի՞թե ձի քեռին ինձ ճանաչում է:

ՁԻ.— Այդ էր պակաս: Ահա և մեր բարեկամ Արմենը: Իմ անունը Պեգաս է:

ԱՐՄԵՆ.— Անհավատալի՜ է:

ՁԻ.— Մի՞թե ձիու խոսելը այնպիսի հրաշք է, որ դու չես հավատում:

ԱՐՄԵՆ.— Ո՛չ, դա չէի ուզում ասել, հրաշքն այն է, որ Վաչիկը ճիշտ է խոսել:

ՎԱՉԻԿ.— (ատելությամբ մոտենալով Արմենին) Դե գիտե՞ս ինչ, դու արդեն չափն ու սահմանն անցար:

ԱՐՄԵՆ.— Է՜, չափն ու սահմանն անցա, թե չանցա, մեկ է, ես ձին տանում եմ (բռնում է ձիու սանձից, բայց Վաչիկը խլում է: Ծեծ ու կռիվ):

ՎԱՉԻԿ.— (հևալով) Առաջ լուսամուտը: Լուսամուտը: Մինչև չսարքես, ձին չեմ տա: Եվ այսպիսի հրաշալի խոսող ձիուն փոխեմ մի լուսամուտի հե՞տ (կանգնում են դեմ-ուդեմ և նայում իրար աչքերի մեջ)

ԱՐՄԵՆ.— Ո՞չ: Դե, ինարկե, ինչպե՞ս կարելի է հավատալ քո խոսքին: Այդ դեպքում ինքդ գցիր ապակին (կտրուկ ետ է դառնում և գնում՝ ուժեղ շրխկացնելով դուռը):

ՎԱԶԳԵՆ.— Ապակի չկա, ձի կա:

ՎԱՉԻԿ.— Էն էլ այնպիսի ձի, որ խոսել գիտե:

ՁԻ.— (խրխնջալով) Եվ ի նկատի ունենք, որ խոսում է մտածելով, մի բան, որն այն-



բան էլ շատ չի պատահում մարդկանց մոտ։
ՎԱԶԳԵՆ.— Իսկ հիմա ի՞նչ պիտի անենք։
ՎԱՉԻԿ.— (հրճվելով) Իսկ հիմա կխաղանք։
ՁԻ.— Ճիշտ է։ Ես խաղալ շատ եմ սիրում։ Բայց ո՞ւր է թարմ խոտը։
ՎԱՉԻԿ.— Մի քիչ սպասի՛ր (վազում է խոհանոց և բերում է մի ափսե վաֆլի)։ Ահա՛, անուշ արեք։
ՁԻ.— (զզվանքով հոտ է քաշում) Ես վաֆլի չեմ ուզում։ Ես խոտ եմ ուզում, թարմ խոտ... Չէ՞ որ ինքդ խոստացար։
ՎԱՉԻԿ.— (բերելով մի աման) Դեղձի պավիդլո է...
ՁԻ.— Իսկ ես վարսակ եմ ուզում։ Ախր ես սոված եմ, դու դա հասկանո՞ւմ ես։
ՎԱՉԻԿ.— (հուսահատված, քարշ տալով բերում է մի ուրիշ աման) Ահա՛, նախաճաշից սպանախ է մնացել... Սա էլ շաքար է, իսկ սա՝ կեքս...
ՁԻ.— Այդքանը կես ատամիս էլ չի բավարարի։
ՎԱԶԳԵՆ.— Վաղն էլ վարսակ կլինի...
ՁԻ.— Իսկ ես հիմա եմ ուտել ուզում (դոփում է ոտքով)։
ՎԱՉԻԿ.— (ուզում է բռնել, բայց ձին հեռու է ցատկում նրանից։ Նորից կահույքը բըռչում է այս ու այն անկյունը) Դե, հանգստացի՛ր, այստեղ չի կարելի թռչկոտել։
ՁԻ.— Իհարկե։ Բայց դու ինձ խոստացար մարմարե ախոռ (շարունակում է ցատկոտել։ Վաչիկն ու Վազգենը վազում են հետևից)։

ՎԱՉԻԿ.— Վա՜յ-վա՜յ-վա՜յ, այդ ի՞նչ ես անում։ Պահարանը շուռ եկավ։ Դե կանգնի՛ր, է՜, սպասի՛ր (վազքը չի դադարում)։ Ա՛ռ քեզ, լամպն էլ ընկավ։
Աղմուկը մի քիչ հանդարտվում է։ Լսվում է թմբուկի ցածր հարվածների ձայն։ Վաչիկի ներսում նորից խոսում է խիղճը։ Հետո հարևան բնակարանից ուժեղ հարվածներ են տեղում պատին։
ՁԱՅՆ.— Ի՞նչ է կատարվում այդտեղ։
ՁԻ.— Սա ի՞նչ բան է։ Պատն են թակո՞ւմ։
ՎԱՉԻԿ.— Քեռի Բաղդասարն է։ Նա բարկանում է, որ մենք աղմուկ ենք բարձրացրել։
ՎԱԶԳԵՆ.— Կամաց, Պեգա՛ս ջան, քեռի Բաղդասարն է։ Աղաչում եմ, սուս մնա։
ՁԻ.— Իսկ ես չեմ վախենում ձեր քեռի Բաղդասարից (թռչկոտում է)։
ՁԱՅՆ.— Եթե դուք վերջ չտաք ձեր աղմուկին, ես կգնամ տնային կառավարչի մոտ։ Իսկական ձիու ոտնաձայներ եմ ես լսում։
ՁԻ.— Իհարկե, իսկական ձիու։ Իսկ դուք ի՞նչ կհրամայեք, ռետինե պայտեր պիտի ունենայի՞, ի՞նչ է։
ՎԱԶԳԵՆ.— (հերոսաբար կանգնում է ձիու առաջ) Ես շատ, է՜, շատ եմ խնդրում... Ես քեզ մի բան եմ ուզում ասել։
ՁԻ.— (կանգնում է) Ի՞նչ կհարցնեք։
ՎԱԶԳԵՆ.— Լսի՛ր, Վաչիկն ի՜նչ լավ է շրթնահարմոն նվագում։
ՎԱՉԻԿ.— (այդ մտքից ուրախանալով) Դե, մո՛տ նստիր, շատ չէ, մի րոպե։





ՎԱԶԳԵՆ.— *Եթե շատ վազվզես, վերջիվերջո կբռնես և հարբուխ կընկնես:*

Ձին հնազանդ նստում է: Վաչիկը բարակ վերմակ է գցում վրան: Վազգենը նստում է մոտիկ և շոյում է ձիու քիթը: Վաչիկը կանգնում է ձիու առաջ և սկսում է շրթնահարմոն նվագել: Նա, ինչպես միշտ, նվագում է վատ ու ձանձրալի: Տեղ-տեղ, ավելի այլանդակ հնչյունների ժամանակ ձին փորձում է վեր ցատկել: Վազգենը քնքշորեն, բայց վճռական կերպով, նորից նստեցնում է: Վաչիկը շարունակում է նվագել:

ՎԱԶԳԵՆ.— *Դե, ձի՛ ջան, սիրելի՛ ձի: Նստի՛ր խելոք, փակի՛ր աչիկներդ և մի քիչ քնիր:*

ՎԱՉԻԿ.— *Սիրելի ձին փակել է աչիկները և քնել է: Նա այլևս վեր-վեր չի թռչում, այլ հանգիստ ննջում է:* (Նորից շրթնահարմոն է նվագում: Հենց որ զայրացուցիչ հնչյուններ է հանում, ձին միանգամից ցատկում է նստած տեղից):

ՁԻ.— *Բավական է, ուղղակի անտանելի է: Ուզում էի փախչել ու խրխնջալ* (վազում է և ուրախ խրխնջում):

ՋԱՅՆ.— *Դե, դուք սպասեցե՛ք: Ես դա այդպես չեմ թողնի* (գոռում է)*: Ես ձեզ ցույց կըտամ, թե ինչ է նշանակում տունը ախոռ դարձնել:*

Տղաները թնկթնկում են, աղմկում ու վազում են ձիու հետևից: Բայց ձին այնպես է ցատկոտում, որ կահույքը շաղ է տալիս սենյակով մեկ: Պատի այն կողմից կրկին լսվում է հարևանի բարկացած ձայնը: Սանդուղքի վրա երևում է տատը: Նա ներս է մտնում սենյակ: Ձին սիրալիր խրխնջում է, կանգ առնում և գլուխ տալիս տատին:

ՏԱՏ.— (ուրախ և առանց նկատելի զարմանքի) *Մի նայեք է՜... Ձի: Իսկ ի՞նչ կասի հայրդ: Ախր նա չի կարող տանել, երբ տանը կենդանի է լինում, նույնիսկ լու:*

ՎԱՉԻԿ.— *Բայց, սիրելի՛ տատիկ, ախր ձին բոլորովին ուրիշ բան է:*

ՎԱԶԳԵՆ.— *Եվ, բացի դրանից, սա հասարակ ձի չէ...*

ՏԱՏ.— *Դե, իհարկե, քանի որ իմ թոռնիկի ձին է: Շատ էլ սիրուն ձի է:*

ՁԻ.— (շատ սիրալիր և միաժամանակ հուզված) *Օ՜, թանկագին տատիկ:*

ՏԱՏ.— (ուրախ) *Նայիր, է՜, նա նույնիսկ խոսում է: Ահա թե ինչ է նշանակում առաջադիմություն: Բայց, սիրելի՛ ձի, ես ձեզ շատ եմ խնդրում, ինձ մի՛ ասեք «տատիկ»:*

ՁԻ.— *Ես ներողություն եմ խնդրում, բայց ինձ թվաց, թե... Մի խոսքով, ես ինձ զգում եմ այնպես, ինչպես տանը: Ես նույնիսկ վերհիշեցի իմ սիրելի տատիկին: Դուք մի քիչ նման եք նրան* (հեկեկում է և ամրակով սրբում արցունքը):

ՎԱԶԳԵՆ.— *Տատիկ, նա շատ է սոված:*



ՏԱՏ.— *Դե, դա ոչինչ։ Ես հիմա կգնամ և շուկայից վարսակ կառնեմ։ Իսկ դուք շատ մի՛ թռչկոտեք, թե չէ կքրտնեք, հետո կմրսեք և կհիվանդանաք* (ձեռքով է անում և գնում)։

ՁԻ.— *Բա հիմա ի՞նչ կլինի։*

ՎԱՉԻԿ.— *Ո՞ւմ ինչ կլինի։*

ՁԻ.— *Դե, պարզ է, ինձ։ Ես ուզում. եմ խոտ, ես ուզում եմ մարզագետին և ընդհանրապես ինձ տեղ է հարկավոր։ Դու մարմարե ախոռ խոստացար։ Գնանք ինձ ցո՛ւյց տուր, թե ես որտեղ պիտի ապրեմ։*

ՎԱՉԻԿ.— *Որտեղ ... որտեղ ... առայժմ խոհանոցում...*

ՁԻ.— *Խոհանոցո՞ւմ, վառարանից պոկ չեկող կատվի նմա՞ն։ Թողե՛ք ձեր անմիտ կատակները։*

ՎԱԶԳԵՆ.— (ականջ է դնում) *Կամա՛ց...Հայրիկն ու մայրիկն են գալիս։*

ՎԱՉԻԿ.— *Շուտ թաքնվի՛ր։ Գալիս են։*

ՁԻ.— *Ներեցե՛ք, բայց ինչո՞ւ անպայման ե՛ս պիտի թաքնվեմ։*

ՎԱՉԻԿ.— (համբերությամբ ձիուն քաշքշում է առաջ ու ետ) *Դու հիմա թաքնվի՛ր, իսկ հետո կտեսնենք։ Հետո ամեն բան կդասավորվի։*

ՁԻ.— *Բայց ո՞ւր թաքնվեմ* (փորձում է սեղանի տակ մտնել։ Սեղանը բարձրանում է)։ *Որպեսզի կարողանամ թաքնվել, սեղանը պետք է ամենաքիչը երկու անգամ բարձր լինի։*

Ծնողները քսիլոֆոնի հնչյունների տակ բարձրանում են աստիճաններով։ Վաչիկը, Վազգենը և ձին սլանում են մի անկյունից մյուսը։

Վերջ ի վերջո ձին թաքնվում է վարագույրի ետևը։ Հենց այդ րոպեին բացվում է դուռը, և ներս են մտնում ծնողները։

ՎԱՉԻԿ.— (բոլորովին անմեղ տեսքով) *Բարև՛, հայրի՛կ։*

ՎԱԶԳԵՆ—.(նույնպես)*Բարև՛, մայրի՛կ։*

Մայրը կասկածանքով շուրջն է նայում։

ՀԱՅՐ.— *Էս ի՞նչ դոփյուն ու աղմուկ-աղաղակ էր այստեղ։ Ամբողջ տունը ցնցվում էր, ասես ձիեր էին դոփում։*

ՎԱԶԳԵՆ.— *Հայրիկ, ոնց որ գիտնական լինես, ի՞նչ շուտ հասկացար։*



ՀԱՅՐ.— *Ինչ-ի՞նչ։*

ՄԱՅՐ.— (վախեցած շուրջն է նայում) *Ինչ ասացի՞ր։*

ՎԱՉԻԿ.— *Համենայն դեպս, ձիեր չեն։ Եղած-չեղածը մի ձի է։ Մեկ հատ ձի... Մի շատ սիրուն ձի։*

ՀԱՅՐ.— *Ձի-ի-ի՞։*

ՄԱՅՐ.— (ձեռքերն իրար զարկելով) *Ձի-ի-ի՜...*

ՎԱՉԻԿ.— *Ի՞նչ կա որ։ Դուք չե՞ք հավատում։ Պեգա՛ս։*

ՁԻ.— գլուխը դուրս հանելով վարագույրի ետևից) *Կու-կո՛ւ։*

Հայրը զարմանքից անհասկանալի հնչյուններ է արտասանում և անկանոն շարժումներ անում։ Մայրը ձեռքերն է բարձրացնում դեպի երկինքը։ Քար լռություն։ Տղաները գլուխները դարձնում են տարբեր կողմեր։

ՋԻ.— (շատ աշխույժ) Կու-կո՜ւ։

ՎԱԶԻԿ.— (շշնջալով ծնողներին) Ասեք «կու-կու», թե չէ կնեղանա։

ՀԱՅՐ.— (վերջապես սթափվում է) Ո՛չ, այդպիսի բան չի կարող լինել։

ՎԱԶԻԿ.— Ի՞նչ է, ուրեմն ես խաբու՞մ եմ։

ՋԻ.— (կոտրատվելով դուրս է գալիս վարագույրի հետևից) Բա ես ո՞վ եմ։ (ռևերանս է անում) Ես Պեգասն եմ։

ՄԱՅՐ.— Վազի՛կ, բավական չէ ձի ես քարշ տվել բերել այստեղ, հիմա էլ մեզ ձեռ ես առնում։

ՋԻ.— Ներեցե՛ք, նա բոլորովին էլ ձեզ ձեռ չի առնում. ես խոսող ձի եմ, ես Պեգասն եմ

ՄԱՅՐ.— Ներողությու՛ն, հարգելի՛ ձի, բայց ի՞նչ պիտի ուտես դու, հո սոված չե՞ս մնա։

ՎԱԶԻԿ.— Մայրի՛կ, հինգ հոգով սեղան չենք նստի, վեցով կնստենք, դրանից աշխարհը չի քանդվի։

ՋԻ.— (բարեհոգի ու ներողամիտ կերպով) Դե ինձ ի՞նչ է պետք որ. երկու-երեք խուրձ խոտ, երեք-չորս կիլոգրամ վարսակ, մի քանի կտոր շաքար։ Ի միջի այլոց, ես քմահաճ չեմ, կարող եմ շաքարավազ ուտել։

ՄԱՅՐ.— Եվ ընդհանրապես մենք ինչպե՞ս կարող ենք ձի պահել, որտե՞ղ տեղավորենք։



հայրն ու մայրը միաժամանակ ցնցվում են կանգնած տեղում, բայց այդ ժամանակ ներս է մտնում տատը։

ՏԱՏ.— Շուկայում վարսակ չկար։ Էդ ոչինչ, վաղը կճարենք։ Դրա համար չարժե անհանգստանալ։ Երբ ես ջահել էի…

ՋԻ.— Իմ թանկագի՛ն տատիկ, իսկ ինչպիսի՞ն էին ձիերը, երբ դուք ջահել էիք։

ՀԱՅՐ.— Տեսեք, թե ինչ անշնորհք ձի է. խոսելու ժամանակ ընդհատում է մեծերին։

ՄԱՅՐ.— Շատ եմ խնդրում, չհուզվես։ Ամեն ինչ լավ կլինի։ Բայց ճիշտ որ. ինչո՞վ պիտի կերակրենք էս անասունին։

ՋԻ.— (վիրավորված) Ես անասուն չեմ, խնդրում եմ քաղաքավարի լինեք ինձ հետ։ Անասուն նշանակում է չխոսող, ինչպես տեսնում եք, խոսում եմ։

ՋԻ.— Խելոք ձիուն շատ փոքր տեղ է հարկավոր։ Բայց, ուղիղն ասած, ձեր ախոռում մի քիչ նեղվածք է։

ՄԱՅՐ.— (սարսափած) Մեր հրաշալի բնակարանին ախոռ է ասում…

ՀԱՅՐ.— Աստծո սիրուն, միայն թե մի՛ հուզվիր։

ՋԻ.— (անցուդարձ է անում: Մեծերը ետ-ետ են քաշվում նրանից) Այո՛, այո՛, չի լինում (ոտքով խփում է ինչ-որ առարկայի: Մայրը ճչում է):

ՎԱԶԻԿ.— Ամեն ինչ կարելի է դասավորել (վազում է դեպի սանդուղքը): Քեռի Ջիլի, քեռի Ջիլի…

ՋԻԼԻՋԱԼԱ.— (մոտենում է շիրմային) Ինչու՞ ես այստեղ թաքնվում։

ՎԱԶԻԿ.— Գիտե՞ք ինչ, քեռի՛ Ջիլի, ես չուզեցի, որ ձեզ տեսնեն։

*ՉԻԼԻՉԱԼԱ.*— *Չի՞ կարելի ավելի քաղաքավարի լինել. ոչ թե՝ Չիլի, այլ՝ Չիլիչալա։*

*ՎԱՉԻԿ.*— *Դե, իհա՞րկե, իհա՞րկե... Ներեցե՛ք խնդրեմ. շտապելուց գլուխս կորցրել եմ։ Նորից դժբախտություն...*

*ՉԻԼԻՉԱԼԱ.*— *Նորի՞ց։*

*ՎԱՉԻԿ.*— (խոսում է շատ արագ-արագ) *Բայց սա վերջինը կլինի, խոսք եմ տալիս։ Դե, ինչպես ասեմ ձեզ... Հարկավոր է մի քիչ ընդարձակել մեր բնակարանը... Գիտե՞ք ինչ, մի քիչ նեղվածք է... Դուք դա կարո՞ղ եք անել, քեռի՛ Չիլի, ներողություն՝ քեռի՛ Չիլիչալա...*

*ՉԻԼԻՉԱԼԱ.*— *Դա ես, իհարկե, կարող եմ անել, բայց դու, Վաչի՛կ, մտածե՞լ ես, թե դրանից ինչ կարող է ստացվել։*

*ՎԱՉԻԿ.*— *Խնդրում եմ անեք, միայն թե մեծանա մեր բնակարանը, շուտ։*

*ՉԻԼԻՉԱԼԱ.*— *Դե լավ, թող քո ուզածով լինի* (կախարդում է)։ *Չիլի-չալա, չիլի-չէ, խոսքը շատ է, գործը՝ չէ։ Հիմա կասեմ կախարդական մի խոսք և ամեն ինչ կլինի. հիպ-հո՛պ։*

Վաչիկը վազում է սենյակ: Լսվում է սարսափելի դղրդոց: Պատերը սկսում են շարժվել: Պարում է կահույքը: Իրարից հեռանում են նաև գործող անձերը:

*ՎԱՉԳԵՆ.*— *Բնակարանը մեծանում է, մեծանում է, մեծանու՜մ։*

*ՁԻ.*— *Այ հիմա ինչ եմ ասե՜լ, տեղ շատ կա։*

Ձին ուրախ թռչկոտում է: Հանկարծ պատի հետևից լսվում է մեկի բարձր ու բարկացած ձայնը:

*ՁԱՅՆ.*— *Ի՞նչ է կատարվում այդտեղ։*

*ՎԱՉԻԿ.*— *Էլի քեռի Բաղդասարն է։*

*ՁԱՅՆ.*— *Ո՞ւր կորավ իմ խոհանոցը։ Հապա նախասենյա՞կը։ Սա ի՞նչ սատանություն է։ Էս բոլորը Վաչիկի արածն է։ Ես կծեծեմ էդ տղային։*

*ՏԱՏ.*— (հանկարծ պոռթկում է) *Դու քո թոռներին ծեծիր։ Եվ ինչպե՞ս է համարձակվում այդպիսի բան ասել։*

*ՎԱՉԻԿ.*— *Միայն թե հանգիստ* (գոռում է) *Քեռի՛ Չիլիչալա, խնդրում եմ մեծացնես ամբողջ շենքը։ Թող ընդարձակվի բոլոր կողմերից։*

Դղրդոցն ու չխչխկոցն այս անգամ ավելի ուժեղ է, քան առաջ: Բոլոր գործող անձերը վեր-վեր են թռչում, ընկնում և նորից կանգնում:

*ՁԱՅՆ.*— *Օհո՛, պատերը հեռ-հեռ են գնում։ Հիմա տեղ շատ կա։*

Հեռվից ուրիշ ձայներ են հասնում. «Ո՞ւր է իմ պատշգամբը» «Վա՜յ, ամբողջ բնակարանս թռավ» «Տնային կառավարի՜չ», «Շտապ օգնությու՜ն», «Շենքը ծակեց ամբողջ փողո՜ցը», «Ջուրը հեղեղու՜մ է», «Ո՞վ արեց այս բոլորը»; «Օգնությու՜ն», «Օգնությու՜ն...»

*ՎԱՉԻԿ.*— *Չիլիչալա՛, սիրելի՜ քեռի Չիլիչալա։ Փրկե՜ցեք ինձ։ Ընդարձակե՛ք փողոցը... Ո՛չ ամբողջ քաղաքը։*

*ՉԻԼԻՉԱԼԱ.*— *Թող այդպես լինի։*

Սարսափելի դղրդոց: Շիրմայի վրայով թռչում են շենքեր, կամուրջներ: Շենքերը բարձրանում են սարերի վրա: Իրարանցում: Կրկեսի շենքը ուժգին շրխկոցով դիպչում է հեռուստատեսության աշտարակին:

*ՁԱՅՆԵՐ.*— «Ամբողջ քաղաքը տակնուվրա է լինում», «Ո՞վ արեց այս ամենը» «Սատկեցնել է պետք դրան»: Ձայները մոտենում են: Պատերի հետևից երևում են բազմաթիվ ձեռքեր, իսկական, մարդկային ձեռքեր: Բոլորն ուղղված են Վաչիկի կողմը: «Այս ամենի մեղքը նրանն է», «Պատասխան թող տա»:

*ՎԱՉԻԿ.*— (սարսափահար թռչում է շիրմայից և ընկնում ուղիղ Չիլիչալայի ձեռքերին) *Քեռի՛ Չիլիչալա, վերջս եկել է, օգնեցե՜ք ինձ։*



ՋԻԼԻՉԱԼԱ.— Ի՞նչ է, ընդարձակեմ ամբողջ աշխա՞րհը։

ՎԱՉԻԿ.— Ի՞նչ եք ասում, մի ձիու համա՞ր...

ՋԻԼԻՉԱԼԱ.— Դե, տեսնում ես, թե ինչքա՜ն անկարգություններ եղան քո մի ստի երեսից։

ՎԱՉԻԿ.— (հուսահատ) Այո՛, այո՛... Ինչ-որ մի անպետք ապակու երեսից։ Թող կորչի այդ լուսամուտը... Ամեն բան դարձրեք առաջվա նման, աղաչում եմ (լաց է լինում)։

ՋԻԼԻՉԱԼԱ.—Վաչի՛կ, իսկ քեզ որտե՞ղ կանգնեցնեմ։

ՎԱՉԻԿ.— Իմ ուսուցչի մոտ, ընկեր Գասպարյանի մոտ։

ՋԻԼԻՉԱԼԱ.— Լավ. թող այդպե՛ս լինի (կախարդում է)։ Ջիլիչալա, չիլի-չէ, խոսքը շատ է, գործը՝ չէ։ Հիմա կասեմ կախարդական մի խոսք և ամեն ինչ առաջվա պես կլինի. հիպ-հո՛պ։

Թմբուկի ուժեղ հարված։ Բեմը լուսավորվում է։ Սեղանի մոտ նստած է ուսուցիչը, կողքին՝ Վաչիկը։

ՎԱՉԻԿ.— Ընկե՛ր Գասպարյան, ներողություն եմ խնդրում, ես եմ ջարդել լուսամուտի ապակին։

Ուսուցիչն ու Վաչիկը անշարժանում են։

ՋԻԼԻՉԱԼԱ.— Այսպիսով, սիրելի՛ հանդիսատես, կատարվեց ամենամեծ հրաշքը։ Այնուամենայնիվ, Վաչիկը ճիշտ խոսեց։ Հետագայում նա կամաց-կամաց կընտելանա դրան և դա բոլորովին հրաշք չի լինի։ Եվ քանի որ ավելի մեծ հրաշք առայժմ ձեզ ցույց տալ չեմ կարող, ապա սրանով էլ վերջացնենք այսօրվա ներկայացումը։

(Երաժշտություն։ Քեռի Ջիլիչալան գնում է, հրաժեշտ տալով հանդիսատեսին) Ցտեսությու՜ն, սիրելի՛ հանդիսատես, ցտեսությու՜ն...



# «ՔԱՐԱՑԱԾ ԵՐԱԺՇՏՈՒԹՅԱՆ» ԱՇԽԱՐՀՈՒՄ

ՀԱՄԱԶԱՍՊ ԽԱՐԵԿՅԱՆ (ճարտարապետ)

Սիրելի երեխաներ, մի պահ պատկերացրեք, թե ինչի նման կլիներ կյանքը, եթե չլինեին բնակելի շենքերը, դպրոցները, գործարանները, հիվանդանոցների, կինոյի, թատրոնների, օպերայի և մյուս շենքերը: Կյանքը կդառնար անհնարին, որովհետև կյանքը հիմնականում ընթանում է այդ շենքերում, կարճ ասած՝ ճարտարապետության մեջ: Այդ բոլոր շենքերը իրենց ներքին և արտաքին ձևերով ու չափերով համարեցված են այն նպատակին, որի համար իրենք ծառայում են, այն գործողությունների համար, որոնք տեղի են ունենում այդ շենքերում: Այսպիսով, կարելի է ասել, որ ճարտարապետությամբ է ստեղծվում այն նյութական միջավայրը, որի մեջ ընթանում է ամբողջ հասարակարգի կյանքը:

Իսկ ինչո՞վ բացատրել հին և նոր ճարտարապետության այդքան տարբեր ձևերը: Շատ պարզ պատճառով. երբ փոխվում են հասարակական ձևերը, դրա հետ փոխվում է նաև կյանքը, մարդկանց ապրելակերպը, հետևաբար պետք է ճարտարապետությունը համարվի նոր կյանքի ձևերին: Օրինակ, միջին դարերում կային ֆեոդալներ և ճորտեր, ֆեոդալներն ապրում էին նոխ պալատներում, ճորտերը՝ խղճուկ հյուղերում: Սոցիալիստական հասարակարգում բոլորի համար կառուցվում են նույնատիպ բնակարաններ: Հայաստանի միջնադարյան մայրաքաղաք Անիում մի փոքր տարածության վրա կառուցված էին տասնյակ եկեղեցիներ, իսկ այժմ մեզ մոտ եկեղեցիների փոխարեն կառուցվում են դպրոցներ, ակումբներ, որովհետև փոխվել են կյանքի պահանջները:

Իսկ չի կարելի օգտագործել եկեղեցու կամ պալատական շենքի ճարտարապետական ձևերը դպրոցի կամ ակումբի համար: Իհարկե, ոչ: Եկեղեցին և ակումբը տարբեր հարմարություններ են պահանջում, բացի դրանից, ճարտարապետությունը ամեն մի շենքում ստեղծելով համապատասխան հարմարություններ, նրա մեջ կատարվող գործողությունների համար, միևնույն ժամանակ ձգտում է ճարտարապետական ձևերով որոշ տրամադրություն առաջացնել մարդկանց մեջ, որոշ հույզեր, այնպես, ինչպես երաժշտությունը, իզուր չէ, որ ճարտարապետությունը անվանում են «քարացած երաժշտություն»:

Բոլորովին էլ պատահական չէ, որ միջնադարյան եկեղեցիներն ունեն վերասլաց ձևեր, դրանով հավատացյալների ուշադրությունը ուղղվում էր դեպի վեր՝ դեպի աստված: Եկեղեցու սրահի ներքևում կիսախավար էր, իսկ վերևում, գմբեթի մոտ՝ լուսավոր, դա նույնպես ուշադրությունը դեպի վեր էր ուղղում: Գունավոր ապակիներով զարդարված լուսամուտներից ներթափանցող լույսը, կիսախավարի հետ մեկտեղ, եկեղեցում ստեղծում էր խորհրդավորության տրամադրություն, որը և նպաստում էր հավատացյալների ջերմեռանդությանը:

Միանգամայն պարզ է, որ այժմ նախագծելով դպրոց կամ ակումբ, ճարտարապետը դիմում



Ռեյմսի տաճարը (13-րդ դար)

է ուրիշ արտահայտչական ձևերի, որպեսզի շենքը լինի լուսավոր, արևոտ, լայն, ազատ: Դրանք երեխաների մեջ առաջացնում են ուրախ և աշխույժ տրամադրություն: Ինչպես որ կոմպոզիտորը տարբեր հնչյունների ներդաշնակ հակադրություններով ստեղծում է երաժշտական կոմպոզիցիա՝ սիմֆոնիա, այնպես էլ ճարտարապետը ծավալների, տարածության ձևերի, գույների հակադրություններով ստեղծում է ճարտարապետական կոմպոզիցիա, որը կարող է լինել խիստ մոնումենտալ՝ Կարմիր հրապարակի նման, հանդիսավոր՝ Երևանի Լենինի հրապարակի նման և ուրախ ու թեթև՝ Մոսկվայի պիոներների պալա-



Վասիլի Երանելու տաճարը (16-րդ դար)



Օձունի տաճարը (7-րդ դար)

տի նման: Այս ճարտարապետական կոմպոզիցիաները տարբեր տրամադրություն և հույզեր են առաջացնում: Ճարտարապետության մեջ օգտագործվում են նաև կերպարվեստի մյուս ձևերը՝ քանդակագործությունը և գունանկարչությունը:

Կարող է հարց ծագել, թե ինչո՞վ բացատրել, որ միևնույն նպատակի համար ծառայող շենքերը, ասենք հենց նույն եկեղեցիները, տարբեր ժամանակներում փոխել են իրենց ճարտարապետական ձևերը: Օրինակ, Իտալիայում 13-րդ դարից մինչև 17-րդ դարը ըստեղծել են ճարտարապետական տարբեր ոճեր՝ գոթական, վերածնության և բարոկոյի: Դա նրանից է, որ այդ ժամանակաշրջանում թեև եկեղեցու մեջ կատարվող գործողությունները մնում են համարյա նույնը, բայց փոխվում են մարդկանց, դասակարգերի փոխհարաբերությունները, նրանց վերաբերմունքը դեպի եկեղեցին, փոխվում է աշխարհայացքը, որը և առաջ է բերում տարբեր տրամադրություններ, տարբեր ճաշակ, այստեղից էլ՝ ճարտարապետական տարբեր ոճեր ու ձևեր:

Ճարտարապետական ոճերի գոյացման մեջ մեծ դեր է խաղում նաև շինարարական արվեստի, տեխնիկայի զարգացումը, որը ճարտարապետին հնարավորություն է տալիս նոր նյութեր, նոր ձևեր օգտագործել: Այսպես օրինակ, վերջերս Ֆրանսիայում հաջողվել է ստանալ լուսամուտի ապակի 11 մետըր բարձրությամբ և 2 մետր լայնությամբ, պատկերացնո՞ւմ եք, թե դա ինչ հնարավորություններ կտա ճարտարապետին: Մեծ հնարավորություններ են ստեղծում նաև երկաթբետոնի կոնստրուկցիաները, որոնց միջոցով օգտագործում են բազմաթիվ ձևեր (լայն բացվածքներ պատերի մեջ. մեծ սրահների ծածկեր, կախված, առաջ եկած մասեր և այլն): Քարե կոնստրուկցիաներով շատ դժվար կամ անհնար էր կատարել այդ ամենը:

Ճարտարապետության մեջ մեծ դեր ունեն խաղալու նոր սինթետիկ նյութերը՝ պոլիմերները, զանազան պլաստիկ նյութերը: Այդ բոլորի շնորհիվ մեր օրերում ստեղծվում է սովետական ճարտարապետության նոր ոճ: Այդ ոճի լավ նմուշներից է Մոսկվայի պիոներների պալատի շենքը:

Իսկ ինչո՞վ բացատրել միևնույն հասարակարգում, ասենք, Սովետական Միությունում, զանազան հանրապետությունների ճարտարապետության տարբերությունները: Դա արդեն ազգային յուրահատկու-



Դամբանաքար (9-րդ դար)

թյունների հարցն է: Դրա պատճառն են հանդիսանում բնակակլիմայական պայմանների ու շինանյութերի տարբերությունը, կենցաղային զանազան սովորույթները, ազգային հին ճարտարապետության տրադիցիաները:

Հայաստանում ամենահին ժամանակներից շինանյութը քարն է եղել, այդ չէր կարող չազդել սովետահայ ճարտարապետության վրա: Արևի առատությունը պատճառ է դարձել այն բանի, որ մեր ճարտարապետության մեջ մեծ դեր է խաղում ռելեֆը՝ բարձրաքանդակը, որը արտահայտիչ է լինում միայն ուժեղ լույս ու



Ոսկեպարի եկեղեցին (7-րդ դար)

ստվերի, արևի առկայության դեպքում: Իսկ Ռուսաստանում արևի քչության պայմաններում ճարտարապետության մեջ ավելի մեծ դեր է խաղացել գույնը, իսկ շինանյութը այնտեղ սկզբում եղել է փայտը, հետո աղյուսը սա նույնպես իր որոշ կնիքն է դրել ռուսական ճարտարապետության վրա: Հայաստանում հաճախակի եղել են երկրաշարժեր, և մեր հին վարպետները մեծ հնարագիտությամբ զանազան միջոցների են դիմել շենքերը ավելի դիմացկուն դարձնելու համար. դրա համար նրանք շենքերի հատակագծերը արել են ավելի հավաքված. քառակուսի, շրջանաձև, կանոնավոր բազմանկյունի և այլն:

Ռուսաստանում, որտեղ չեն եղել երկրաշարժեր, հատակագծերը ավելի ազատ են, մասնատված: Մեզ մոտ շոգը ստիպում է բնակարաններին կից կառուցել ընդարձակ պատշգամբներ, իսկ մթնոլորտային տեղումների քչությունն ու անտառանյութի պակասը՝ հարթ կտուրներ (քիչ թեքությամբ): Ռուսաստանում տեղումների շատության պատճառով կառուցումեն երկթեք կտուրներ:



Ուշիի եկեղեցին (7-րդ դար)

Այսպիսով տարբեր բնակակլիմայական պայմանների շնորհիվ ճարտարապետությունը ստանում է ազգային առանձնահատկություններ:*

Բայց շինանյութերը, կառուցողական տեխնիկան և կյանքի պայմանները տարբեր հանրապետություններում գնալով ավելի են նմանվում իրար: Իսկ դա չի կարող ազդեցություն չունենալ ճարտարապետության վրա:

## ՍՎԵՏԼԻ ԼՃԻ ԳԱՂՏՆԻՔԸ...

Գլաժայների միջից ավտոմեքենան իր լապտեր-աչքերով նայում էր Միտյային։ Բեռնատարը ինչ գործ ունի լճի հատակում, ինչ է պատահել, որտե՞ղ է վարորդը... Ահա հարցեր, որ խռնվում են Միտյայի գլխում, և նա սուզվում է ջրի տակ՝ մեքենայի մասին «նորություններ» իմանալու։ Ցրտից կափկափում են նրա ատամները, անտառապատ լեռների վրա բոցավառվող մայրամուտի խարույկն անզոր է ջերմացնելու նրա սառած մարմինը, բայց Միտյան չի դադարեցնում հետախուզությունը։ Սակայն մութն՝ ըստիպում է նրան մտնել անտառ և պատսպարվել այնտեղ։

Առավոտյան նա վերսկսում է իր հետախուզությունը։ Առեղծվածային մեքենան կանգնած է իր տեղում։ Հանկարծ Միտյան սկսում է շնչասպառ լինել։ Լիճը քաշում է նրան։ «Խեղդվո՜ւմ եմ»,— սար-




սափով մտածում է նա։ Բայց նրան օգնության են հասնում։

Եվ ահա միլիցիայի բաժանմունքի բոլոր աշխատողների երկարատև որոնումները պսակվում են հաջողությամբ. գտնվում է առևանգված երեք տոննանոց ավտոմեքենան, բայց... Սվետլի լճի հատակում։

Այդ գործում միլիցիայի բաժանմունքի աշխատողներին մեծ օգնություն ցույց տվեցին Միտյան, Սեմյոնը, Պավլիկը։ Սրանք սովետական դպրոցականներ են, ռոմանտիկական սերունքների մասին երազող լավ պատանիներ, որ արկածներ են որոնում տայգայում։

Բայց ինչպե՞ս էր մեքենան լճի հատակն իջել, ով էր այդ չըգիտեր, բացի այդ երեք պատանիներից։

Եթե ուզում եք դուք էլ այդ մասին իմանալ, պատանի ընթերցողներ, ապա եկեք գնանք «Սվետլի լճում» վիպակի հերոսների հետ քերով, այսինքն՝ կարդանք Վ. Գրավիշկիսի վիպակը։

Դ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

## ՀՐԱՇԱԼԻ ԳԻՐՔ

Պատանի տեխնիկների ուրախությանը չափ չկար. լույս էր տեսել տիեզերագնացության մասին պատկերազարդ մի գիրք, որը կարող էր պատասխան տալ երեխաներին հետաքրքրող բոլոր հարցերին։

Իր խորունկ հրճվանքը չէր կարողանում թաքցնել, հատկապես, կոնստրուկտոր Արտակը։ Այդպես էին անվանում ընկերները նրան, որովհետև նա մեծ ընդունակություն էր ցուցաբերում մեքենագիտության մեջ և նրա պատրաստած ինքնաթիռ-մոդելները միշտ ամենից բարձր էին թռչում։

Ինքը՝ Արտակն էր առաջինը գընել Պ. Կլուշանցևի «Դեպի օտար մոլորակներ» գիրքը և անհամբերությամբ նախ մենակ կարդացել, ապա բերելով դպրոց՝ ասել էր

— Հրաշալի գիրք է, տղաներ, ուղղակի գյուտ է դա մեզ համար։ Եվ ինչպիսի՜ պարզ, մատչելի լեզվով է պատմում հեղինակը ամենադժվար հարցերի մասին։

Եվ Արտակը սկսեց պատմել, թե ինչե՜ր է սովորել, ինչպիսի՜ գաղտնիքներ է իմացել մի օրում, որոնք մարդիկ ձեռք են բերել դարերի ընթացքում։ Բայց ընկերները չբավարարվեցին դրանով, նրանք ուրիշներին կարդա, և մանրամասն ուսումնասիրել այդ գիրքը։ Եվ ահա նրանց առջև բացվեց տիեզերային գաղտնիքների կախարդական մի աշխարհ։

Պատանիներն իմացան, թե ինչպես են պատրաստվում տիեզերքի հետախույզ արհեստական արբանյակները, հրթիռներն ու տիեզերանավերը։ Իմացան, որ




Լուսնի, Մարսի և մյուս մոլորակներին հասնելու համար դեռ պետք է ստեղծվեն խոշոր մարդատար տիեզերանավեր, դատարկ, անօդ տարածության մեջ պետք է կառուցվեն տիեզերային կայաններ, որոնց մասերը պետք է առանձին-առանձին ուղարկվեն տիեզերք և այնտեղ մարդկանց միջոցով միացվեն իրար։ Իմացան, թե մարդիկ ինչպես պետք է շարժվեն դատարկ տարածության մեջ, որտեղ ոչ մի հենման կետ չկա։

Երեխաների համար պարզվեց, թե տիեզերագնացներն ինչպես պիտի շնչեն Լուսնի վրա, որտեղ օդ չկա, ինչպե՞ս պիտի ուտեն, ինչո՞վ պիտի սնվեն, ինչպե՞ս...

Բայց միթե հնարավոր է բոլորը պատմել։ Երեխաներ, խորհուրդ կտանք անպայման կարդալ այդ հրաշալի գիրքը։ Ո՞վ գիտի, գուցե հենց ձեզանից շատերին վիճակվի սեփական ոտքերով քայլել Լուսնի կամ մի այլ մոլորակի վրա։

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ



# ՄԵՂՐԻ ՓՈԽԱՐԵՆ... ՊՂԻՆՁ

ԳԱԲՐԻԵԼ ԱՐԵՎՅԱՆ

Նկ. Ալ. Գրիգորյանի

Խաչատուր քեռին, որին Ջատուր քեռի էին ասում, նախրապան էր։ Այունյաց հին մարդկանցից էր նա։ Կանաչապատ լեռների զմրուխտ փեշերն էին նրա օրրանը։ Ամեն օր մութ-լուսին գյուղի նախիրն առաջն արած՝ հանդ էր գնում։ Ամենալավ արոտավայրերն էր տանում նախիրը, ամենահամեղ խոտը կերցնում։

Ինչ արոտավայր է պղինձն ընդերքում ամբարած այս լեռնալանջը։ Ջատուր քեռին արևի ծագն էլ է այստեղ ընդունում, մայրամուտն էլ։ Ամռանը՝ աստղերի պարն էլ է այստեղից դիտում, հորիզոնից-հորիզոն ընկած Կաթնծիրի մոխրագույն շերտի տակից պեծին տվող աստղերի փայլն էլ, խամրելն էլ։ Նա այստեղ է իր կռնակին զգում և՛ կարկուտի հարվածները, և՛ անձրևի տարափը, այստեղ է արևով վառել ու ցորնագույն դարձրել իր դեմքը, հողմերի ապտակներից կկոցել աչքերը...

Սրնգի դայլայլը հեռվից միշտ մատնում է նրա տեղը։ Լեռնալանջերին սրնգի ձայնը հնչում է այնպես, ասես բոլոր երաժշտական գործիքների հնչյուններից քաղցրն ու հաճելին հանել, ընծայաբերել են սրնգին։

Ի՜նչ փորձությունների մեջ է ընկել Ջատուր քեռին այս լեռնալանջերին, հարևան սարերում։ Փոթորիկները, հողմերը որքա՜ն են հալածել նրան, քանի՜-քանի՜ անգամ համընկել են նրա կայծքարերն իրար խփելուց առաջացած և ամպրոպների ճայթած, հորիզոնը լախտած կայծակները։ Դրա համար էլ նա սիրով, հեքիաթների ծերունիների նման, հաճախ պատմում էր. «Ջախմախաքարս, որ դանակի շեղբին խփեցի, Խուստուփի վրա կեծակ ցոլեց, մի կեծակ, որ աշխարհ լուսավորեց»։

Մի՛ օր էլ նախիրն արոտի տանելիս, ինքը թեքվել և մտել էր հարևան ձորը։ «Առաջներին լավ խոտ է, թող ուտեն. ես էլ տեսնեմ էս ձորում ինչ կա»,—մտածեց Ջատուր քեռին։

Սակայն մի ժայռի կտրվածք-վիհն անմատչելի էր և նա չէր կարող իջնել։ Բարձրացավ ծերպը, ցանկացավ այնտեղից նայել ցած։ Տեղը հարմար չէր, փորի վրա պառկեց։ Այդպես երկար նայեց, երկար և, զարմանալի բան, նրա ուշադրությունը գրավեցին մեղուները... Ահա, հորձանքով դուրս են գալիս ժայռի ուղիղ կեսում բացված խորշից, պարս կազմած թռչում։ Մի ուրիշ պարս էլ գալիս է, հորձանքով ներս խուժում. «Մե՜ղր... որքա՛ն ճանճ է դուրս գալիս, որքա՜ն գնում... էս հո մի ամբողջ փեթականոցի ճանճ է»,—ինքն իրեն խոսեց Ջատուր քեռին և մնաց իր տեղում, գլուխը ցած կռացրած, խոռոչին նայելիս։ Հետո վեր կացավ գնաց, ժայռի կողքից նայեց, իջավ ստորոտը, այնտեղից տնտղեց։ Ամեն տեղից էլ շատ լավ նշմարվում էր. մեղուները գալիս էին բեռնավորված նեկտարով, գնում թեթևացած։

Մեղրը մեխվեց Ջատուր քեռու ուղեղում, մեղրը ամեն-ինչի տեղը գրավեց։ Ծերունին մտովի նույնիսկ վայելեց վայրի բարիքը, որին այս լեռներում ու անտառներում հաճախ են հանդիպում։ Նա հիշեց, թե ինչպես մի քանի տարի առաջ մի ամբողջ ծառափչակ մեղր էր գտել անտառում... «Բայց սա ուրի՜շ բան է երևում, մի չորս-հինգ դույլ կլինի»,—խորհեց նա։

Հաջորդ օրը նա իր հետ բերեց մի երկար պարան և մի դույլ։ Չմոռացավ վերցնել նաև բրունգն ու հարևան մեղվապահի երեսկալ-ցանցը։

Նախիրը խոտավետ լանջն ի վեր արձակելով, Ջատուր քեռին մոտեցավ ժայռի պռունկին։ Հարմար տեղից պարանը կապելով՝ վայր ձգեց այն։ Ծայրը հասնում էր ժայռի կեսին։ Բրունգը խրեց գոտիի տակ և բռնելով պարանից՝ ցած իջավ։

Հեշտ չէր նրա համար ցած իջնելը։ Քերծվեցին ձեռքերը, պատռվեցին շալվարի ծնկները։ Բայց նա անվարան ցած էր իջնում...

Հասավ ժայռի ելուստին։ Բրունգով խփեց մի քանի տեղ, փորեց, փորփրեց։ Բայց հե՞շտ է բնության դարավոր հարվածներին դիմացած ժայռի ելուստը փշրելը. որ հեշտ լիներ, կայծակները կփշրեին է՛լի։ Այնուամենայնիվ հարվածում էր, հարվածում։ Կռներում այլևս ուժ չէր մնացել։ Նա մի պահ մնաց ժայռին հենված, որպեսզի հանգստանար, ուժ հավաքեր, նորից սկսեր։ Հանգստանալը, մեղրի մոտիկ բույրը նրան ոգեշնչեցին, և նա նոր հարվածներ տեղաց ելուստին. կայծեր թռան, էլի թռան, իսկ ելուստը չկոտրվեց։ Տեսնելով, որ այդկերպ չի լինում, Ջատուր քե-

ւին բլուրզով փորփրեց քարի արմատից, որպեսզի արմատահան անի, ցած գլորի։ Փորում էր և, երբ շատ երկարեց գործը, ինքն իրեն սկսեց նախատել, որ նախիրը թողել է անտեր, իզուր ժամանակ է վատնում։

Վերջին հարվածի հետ նլուստը տեղահանվեց, ցած գլորվեց և նա չհավատաց աչքերին։ Կանաչավուն-գորշ, տեղ-տեղ՝ դեղնավուն, երբեմն կապույտ շերտերը մի՛ քանի թիզ հեռու էին գնում անազին լայնքով։ Զատուր քեռին նայեց այդ շերտին՝ գյուղի անհուն բավականությամբ և շշնջաց.

— Գյի՜նձ, ագյի՜նձ...

Միլլը մնա՜ց... Այդ կարծր ապարը նրան մեղրից քաղցր թվաց։

* * *

Հաջորդ օրը Զատուր քեռին մտավ հանքերի կառավարիչ Աթանեսյանի առանձնասենյակը և միրուքը հարդարելով, ժպիտը դեմքին մոտեցավ գրասեղանին.



— Ընկեր վարիչ, ձեզ մի նվեր եմ բերել,— ասաց նա։

— Ի՞նչ նվեր է, հայրիկ,—աշխույժ հարցրեց կառավարիչը, ինչ-որ կատակախառն ցույց զգալով ծերունու աչքերում։

— Հրե՛ս, իմ նվերը սա է,—ասաց ծերունին և Զուխայի գրպանից հանելով պղնձաքարի մի մեծ կտոր, դրեց կառավարիչի գրասեղանի վրա։

Պղնձաքարին նայելով՝ կառավարիչն իսկույն ասաց.

— Հայրիկ, սա որտեղի՞ց է։

— Բա էլ ի՞նչ նվեր է, որ չեմ ասելու, թե որտեղից է։

—Հայրիկ, քո բերած այս հանքաքարի մեջ բացի պղնձից, էլ ի՞նչ լինի, որ լավ լինի,—երկար զննելուց հետո, հարցրեց Աթանեսյանը։

— Քե՛ մատաղ, որդի՛, ոսկի չլինի՞, յա արծաթ։

— Հա՛մ էն կա, հայրիկ, հա՛մ էն։

Կառավարիչի փորձառու աչքն անմիջապես նկատել էր կանաչավուն զանգվածի մեջ կարմրավուն-կապտավուն շերտիկներ ևս, որ ոսկու և արծաթի հետքեր էին։ Ծերունին խինդով էր համակվել։ Ժպիտը և ուրախության արտահայտությունը հանգրվանեցին նրա դեմքին։ Կառավարիչը մերթ նայում էր հանքաքարին, մերթ ծերունու բարի աչքերին։

— Հայրիկ, դե հիմա ասա՛, թե որտեղից ես գտել։

— Քաղաքի դիմաց ընկած մեծ լեռան մյուս կողմի Դյունեն գիտեք, չէ՞։

— Հա, եղել եմ այնտեղ։

— Էն ժեռը, որից ջուրը թափվում է ցած, գիտե՞ք։ Նրա աջ կողքից է։ Պարանով եմ իջել, փորել ու գտել։ Մեզը էլ կա ժեռի ճեղքում։ Ամա հալա չեմ կտրել։ Մի քանի թիզ լայնությամբ ընկած է պղնձի տամարը։ Հե՜ց ախաշկարա երեվում է։ Հիմա կարելի է ժեռի ծերպից էլ տեսնել։

Կառավարիչը նշումներ արեց իր առջև դրված թղթի վրա. ապա դառնալով ծերունուն, ուրախուրախ ասաց.

Շատ, շա՜տ շնորհակալություն, հայրիկ։ Հենց այսօր ես կարգադրություն կանեմ։ Մենք երախտապարտ կլինենք քեզ.

Հաջորդ օրը ժայռի ծերպից քիչ հեռու տեղադրեցին ավտոմատային փորման սարքավորումը։ Ինչքան խորը շերտերից էին հանվում բեկորները, այնքան նրանք ավելի հարուստ էին պղնձի պարունակությամբ։ Փորձեցին ուրիշ տեղերից փորել նույն շերտի ուղղությամբ։ Ստացվեց նույն արդյունքը։

Ահա Սյունյաց աշխարհի հանքախմբում ինչպես ծնվեց Զատուր քեռու հանքը։

# ԴԱՇՏԱՎԱՅՐԵՐ

ԹԱԴԵՎՈՍ ՀԱԿՈԲՅԱՆ
(Պատմական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր)

Հայաստանի բարձրաբերձ լեռների միջև ընկած են տարբեր մեծության բազմաթիվ դաշտեր ու գետահովիտներ, որոնք ամենահին ժամանակներից ի վեր հայտնի են իրենց արգավանդությամբ և նշանավոր դեր են խաղացել մեր ժողովրդի բազմադարյան պատմության մեջ։

**ԱՐԱՐԱՏՅԱՆ ԴԱՇՏ**. Իր մեծությամբ և արգավանդությամբ ամբողջ Հայաստանում ամենահայտնի դաշտը Արարատյան դաշտն է[1], որը կոչվում է նաև Մերձարաքսյան դաշտ։ Արարատյան դաշտն իր անունն ստացել է Հայաստանի տերիտորիայում մեր թվականությունից առաջ 9—6-րդ դարերում գոյություն ունեցած Ուրարտու պետության անունից։ Արարատյան դաշտը տարածվում է Արաքս գետի միջին հոսանքի երկու ափերին և բոլոր կողմերից շրջապատված է լեռներով։ Դաշտի արևմտյան սահմանը հասնում է մինչև Ախուրյան գետի գետաբերանը, արևելյանը՝ Գեղամա լեռները, հյուսիսայինը՝ Արագածի փեշերը, իսկ հարավայինը՝ Հայկական Պար լեռնաշղթայի ստորոտները։

Արարատյան դաշտի կլիման խիստ չորային է և շոգ։ Նրա բնությունը կիսաանապատային է, բուսականությունը՝ աղքատիկ, իսկ հողերը մեծ մասամբ աղուտային։ Կան ճահճուտներ։ Սակայն ամենահին ժամանակներից մեր նախնիները արհեստական ոռոգման ցանց ստեղծելով՝ Արարատյան դաշտը վեր են ածել այգեշատ ու կանաչապատ տարածության։ Մեր հին պատմիչները մեծ գովեստով են խոսում Արարատյան դաշտի բերրիության մասին, այն համարելով դրախտավայր։ Օտարների տիրապետության շրջանում, 13-րդ դարից սկսած, խափանվում են Արարատյան դաշտի ոռոգման առուներից շատերը, չորանում՝ արհեստական լճակներն ու ամբարտակները և դաշտի մեծ մասը վեր է ածվում անպտուղ տարածության։

Արարատյան դաշտը նորից դրախտի է վերածվել մեր օրերում՝ Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո, երբ կառուցվեցին մի շարք նոր ջրանցքներ ու առուներ, չորացվեցին ճահճակալված հողային տարածությունները, յուրացվեցին աղահողերի մեծ մասը։ Այժմ էլ շարունակվում են Արարատյան դաշտի չմշակված հողերի յուրացման աշխատանքները։

Արարատյան դաշտը մեր հանրապետության ամենախիտ բնակեցված մասն է։ Արարատյան դաշտը հզոր արդյունաբերության հետ միասին հայտնի է խաղողով, դեղձով, ծիրանով և այլ մրգերով, բանջարեղենով և բոստանային մշակույթներով։ Արարատյան դաշտը միշտ էլ եղել է մեր ժողովրդի քաղաքական, տնտեսական և մշակութային կյանքի կարևորագույն կենտրոնը։ Այստեղ են եղել Արմավիր, Արտաշատ, Վաղարշապատ և Դվին վաղեմի մայրաքաղաքները, այստեղ է գտնվում մեր չքնաղ Երևանը։

**ՇԻՐԱԿ**. Շիրակի ընդարձակ դաշտը տարածվում է Արաքս գետի ձախակողմյան վտակ Ախուրյանի վերին և միջին հոսանքների երկու ափերին։ Ըստ ավանդության, Շիրակն իր անունն ստացել է ավանդական Շարայի անունից, որը, ըստ նույն ավանդության, շատակեր լինելու պատճառով ժառանգություն էր ստացել այդ հացառատ դաշտը։ Մինչև օրս էլ մեր ժողովրդի մեջ պահպանվել է Շիրակի դաշտի արգավանդության հետ կապված այն ասացվածքը, թե. «Դու ունես Շարայի որկորը, բայց մենք չունենք Շիրակի ամբարները»։

Շիրակը երկրագործության ամենահին կենտրոններից մեկն է։ Նա ծածկված է սևահողով և առանձնապես հայտնի է իր հացահատիկային մշակույթներով։ Մեր օրերում այստեղ հաջողությամբ մշակում են նաև շաքարի ճակնդեղ, որի բազայի վրա կառուցված է շաքարի գործարան։

Արարատյան դաշտի կլիմայի համեմատությամբ, Շիրակի կլիման ցուրտ է։ Շիրակում է գտնվում մեր հանրապետության երկրորդ քաղաքը՝ Լենինականը, որը մեր մատենագրության մեջ հիշատակվում է 8-րդ դարից Կումայրի (հետագայում՝ Գյումրի) անունով։

Շիրակը հարուստ է հնություններով։ Այստեղ են գտնվում աշխարհահռչակ Անի մայրաքաղաքի ավերակները, Տեկորի, Արգինայի, Հոռոմոսի, Թալինի և հայտնի այլ տաճարներ։ Շիրակի՝ Ախուրյանի ձախ կողմում ընկած մասը մտնում է Սովետական Հայաստանի մեջ և կազմում է նրա արդյունաբերական ու գյուղատնտեսական ամենակարևոր շրջաններից մեկը։

Շիրակում է անցկացվել Սովետական Հայաստանի ոռոգման առաջին ջրանցքը՝ Շիրկանալը։

**ԱԼԱՇԿԵՐՏԻ ԴԱՇՏ**. Ալաշկերտ անունը ծագել է Վաղարշակերտ (Վալարշակերտ) անունից։ Իր բնույթով Ալաշկերտի դաշտը նման է Շիրակին։ Վերջինիս նման Ալաշկերտի դաշտը ևս հնագույն ժա-

[1] Այն ընդարձակ հարթությունները, որոնք ծովի մակերևույթից ունեն մինչև 200 մ բարձրություն, կոչվում են դաշտավայրեր, իսկ դրանից ավելի բարձրություն ունեցողները՝ սարահարթեր։ Հայկական լեռնաշխարհի բոլոր հարթություններն էլ 200 մետրից բարձր են, բայց հին ժամանակներից ի վեր դրանք կոչվում են ոչ թե սարահարթեր, այլ դաշտեր։ Դրանք դաշտ են կոչվում նաև այժմ, հետևելով տրադիցիային։

մանակներից հայտնի է իր հացահատիկային մշակույթներով։

Ալաշկերտի դաշտը բոլոր կողմերից պատած է լեռներով և փռված է Արևելյան Եփրատի վերին հոսանքի երկու կողմերում։ Մինչև առաջին համաշխարհային պատերազմը այն եղել է Արևմտյան Հայաստանի ամենախիտ բնակեցված շրջաններից մեկը։ Այստեղ կային 100-ից ավելի գյուղեր և մոտ 10 գյուղաքաղաքներ։ Այժմ Ալաշկերտի դաշտի մեծագույն մասը վեր է ածվել անպտուղ տարածությունների և արոտավայրերի։ Այստեղ ամենուրեք հանդիպում են հայկական հին և միջնադարյան ամենատարբեր տեսակի հուշարձաններ՝ գյուղաքաղաքների բարավանդաների, տաճարների, վանքերի ու բերդերի ավերակներ։

**ԷՐԶՐՈՒՄԻ ԴԱՇՏ.** Անունը ստացել է Էրզրում քաղաքի անունից։ Ծովի մակերևույթից ունեցած մեծ բարձրության պատճառով Էրզրումի դաշտը սովորաբար կոչվում է սարահարթ կամ բարձրավանդակ։ Էրզրումի դաշտը տարածվում է Արևմտյան Եփրատ գետի վերնագավառում։ Եփրատն այստեղ ունի շատ դանդաղ ընթացք և առաջացնում է ընդարձակ ճահճուտներ։ Էրզրումի դաշտն ունի բերրի հողեր, բայց կլիմայական պայմանները դաժան են։



Արարատյան դաշտ

Գործ՝ նկարիչ Մ. Սարյանի

Էրզրումի դաշտն իր բնական հարստություններով Արևմտյան Հայաստանի ամենանշանավոր շրջաններից մեկն է։ Այստեղ կան նավթի, քարածխի, երկաթի հսկայական պաշարներ։ Հայտնի են նրա հանքային տաք աղբյուրները՝ ջերմուկները։ Էրզրումի շրջանում կան բազմաթիվ հնություններ։ Այստեղ է գտնվում Արևմտյան Հայաստանի ամենախոշոր քաղաքը՝ Էրզրումը (Կարին)։ Միջին դարերում այստեղ էր գտնվում Արզն խոշոր քաղաքը, որը հիմնահատակ ավերվել է սելջուկների կողմից 1049 թվականին։

**ԵՐԶՆԿԱՅԻ ԴԱՇՏ.** Երզնկայի դաշտը արևելքում Մամախաթունի և Աշկալայի դաշտերի միջով միանում է Էրզրումի դաշտին։ Վերջինիս նման Երզնկայի դաշտն էլ փռված է Արևմտյան Եփրատի հովտում, բայց համեմատաբար ավելի ցածր դիրք ունի, քան Էրզրումի դաշտը։

Երզնկայի դաշտի կլիման համեմատաբար խոնավ է ու մեղմ։ Չնայած մեծ բարձրությանը՝ այստեղ նույնիսկ բամբակ է աճում։ Երզնկայի դաշտում կան հայկական հին ու միջնադարյան շատ ավերակներ։ Ամբողջ դաշտի ամենանշանավոր վայրը Երզնկա քաղաքն է, որը հնում ավան էր և հայտնի էր Երեզ կամ Երիզա անունով։ 13—14-րդ դարերում Երզնկան Հայաստանի ամենախոշոր քաղաքներից մեկն էր։ Վենետիկցի հայտնի ճանապարհորդ՝ Մարկո Պոլոն մեծ հիացմունքով է խոսում այդ քաղաքի, հատկապես այդտեղ արտադրվող գործվածքների մասին։ Երզնկայի դաշտը հայտնի է իր ջերմուկներով։

**ՄՇՈ ԴԱՇՏ.** Մշո դաշտը ընկած է Արևելյան Եփրատի միջին հոսանքի հովտում, Վանա լճից արևմուտք։ Մշո դաշտը Արևմտահայաստանի կյանքում խաղացել է նույն դերը, ինչ դեր որ ամբողջ Հայաստանի համար խաղացել է Արարատյան դաշտը։

Մշո դաշտը Հայաստանի ամենաարգավանդ դաշտերից է, նա ոռոգվում է Արևելյան Եփրատի ու նրա ձախակողմյան վտակ Մեղրագետի ջրերով։ Կլիման տաք է և չոր։ Կան ճահճուտներ։ Մշո դաշտը պատմական Հայաստանի ամենախիտ բնակեցված շրջաններից մեկն էր։

Իր շրջակայքի հետ միասին՝ հնում Մշո դաշտը կազմում էր Տարոն գավառը։

Տարոնում հայտնի էին պատմական շատ վայրեր։ Այստեղ էին գտնվում Մուշ քաղաքը, որի անունով և դաշտը կոչվել է Մշո դաշտ, Հացեկաց գյուղը, որտեղ ծնվել է Մեսրոպ Մաշտոցը, Խորնի գյուղը՝ 5-րդ դարի հայ պատմագիր Մովսես Խորենացու ծննդավայրը, Ողական ամրոցը՝ հայոց Մամիկոնյան սպարապետների աթոռանիստը, Աշտիշատ ու Գլակա վանքերը և այլն։

Մշո դաշտը հայտնի է եղել հացահատիկներով և բանջարեղեններով։ Բայց այժմ ոռոգման բացակայության, երկրագործության ու տնտեսության մյուս ճյուղերի անկման պատճառով, դաշտի մեծագույն մասը վեր է ածվել անպտուղ տարածության։



## ԲԱՌԱՇՂԹԱ ԽԱՉԲԱՌ

1. Աստղադիտարան՝ Հայաստանում: 2. Ջրվեժ՝ Ամերիկայում: 3. Լեռ՝ Հայաստանում: 4. Աֆրիկայի ամենաերկար գետը: 5. Հայ գրող, որը 1915 թվականին զոհ դարձավ թուրքական յաթաղանին: 6. Չժանգոտվող մետաղ: 7. Ուզբեկ գրող: 8. Ինդոս գետ: 9. Պետություն՝ Աֆրիկայում: 10. Անթափանց հանքաքար՝ կազմված կրճքարի ամենամանրագույն հատիկների և զանազան նյութերի խառնուրդի կուտակումներից: 11. Թատրոն՝ Երևանում: 12. Երգող թռչուն: 13 Դերձակի գործիք:

Առաջարկ՝ ԱՐՍԵՆ ԲԱԲԱՅԱՆԻ






## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


1. Կայծակնային իմ բախտի — Ս. ԽԱՐԱԶՅԱՆ
2. Իմ զինվորական ծառայությունը — Լ. Վ. ԴՐԻԳՈՐՅԱՆ
3. Թե կուզեք՝ մեզ գտեք — Ռ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ . . . . . 4
4. Գիշերը անտառում — Ն. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ . . . 4
5. Հինգ եղբայրները . . . 5
6. Փոքրիկ պլանավորողը — Լ. ԴՈՒՐՅԱՆ . . . . . 8
7. Առակներ — Մ. ԿՈՐՅՈՒՆ . 9
8. «Քարացած երազ» աշխարհում — Հ. ԽԱՉԱՏՐՅԱՆ . . . . . 12
9. Գրքերի աշխարհում . . 15
10. Մեզնից փոխարեն... այինն — Վ. ԱՐԵՎՅԱՆ . . . . . . 16
11. Մեր աշխարհագրական բառախաղը — Թ. ՀԱԿՈԲՅԱՆ 18
12. Ժամանց . . . . . . . . 20
13. Խաղեր . . . . . . . . . 20


Շապիկը՝ ճարտարապետ ԷԴՎԱՐԴ ԱՐԵՎՇԱՏՅԱՆԻ

Այս համարի հետ տրվում է անվճար հավելված «Լաստամուտը և ձին»

Խաղեր

## ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ՔՈՒՆ

Խաղն սկսվում է այսպես. զբոսանքի ժամանակ «հանկարծ» նկատում եք, որ ձեր ընկերներից մեկը չկա։ Կանչում եք՝ ոչ մի պատասխան, անհայտացել է։

Օգտվելով «Քնած գեղեցկուհի» հեքիաթի մոտիվներից, նրա անհայտանալու վերաբերյալ նախապես մի ֆանտաստիկ պատմություն հնարեք։

— Լսել եք, — ասում եք դուք, — որ այս անտառում մի չափազանց գեղեցիկ պատանի կա։ Ընդամենը քսան րոպե առաջ, հատապտուղներ հավաքելիս, նա հանկարծ մտաը քերծել է ինչ-որ կախարդական բույսով և տեղն ու տեղը քնել։ Արթնացնել նրան կարելի է միայն ձեռքի մտերիմ սեղմումով։ Կասկած չկա, որ նորահայտ «Քնած գեղեցիկը» մեր կորած ընկերն է։ Պետք է գտնել նրան, թե չէ՝ կարող է հարյուր տարի քնել։

Նրան փնտրելու համար հետքեր կա՞ն զոնե։ Այո՛, կան, բայց


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱՅԱՆ Վ., ԴՐԻԳՈՐՅԱՆ Ա. (գլխավոր խմբագրի տեղակալ), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար) ՍԱՀԱԿՅԱՆ Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2-41-83, 2-59-06:

ՎՖ 08341. Պատվեր՝ 1264. Տպաքանակ՝ 41 100: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 27/VI 1961 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91:

Գինը 20 կ.

շատ աննշան։ Հայտնի է, որ նրանից ոչ հեռու կանգնած է մի հաստաբուն լորի։ Եթե մեջքով դեպի լորին կանգնես և ուղիղ գծով քայլես առաջ, կհասնես հենց այդ հատապտուղներով հարուստ տեղին։

Ահա բոլորը։ Կարելի է գնալ որոնելու։ Ով առաջինը գտնի «կախարդական քնով քնած տղային», նրա հաշվին կգրանցվի երեք միավոր։

Ձեր առաջարկած խաղը մասնակիցների համար կդառնա դիտողականության, եղած առարկաների միջոցով կողմնորոշվելու ինքնատիպ մի մրցություն։

Տվյալ դեպքում խաղի մասնակիցները պետք է փնտրեն հաստաբուն լորին և հատապտուղներով հարուստ վայրը։ Կողմնորոշվելու միջոց կարող են լինել՝ աղբյուրը, մրջնանոցը, ծորակը, ճամփեզրի քարը, ծառուղիների խաչմերուկը և այլն։



Խաղին պատրաստվում են նախապես։ Դուք հանձնարարում եք ձեր օգնականին, որ բոլոր խաղընկերներից ծածուկ՝ մեկին թաքցնի անտառում։ Մի քիչ հետո ձեր օգնականը կհայտնի, որ ձեր կարգադրությունը կատարված է և կբացատրի, թե որտեղ է գտնվում այդ վայրը, կասի այն նշանները, որոնց միջոցով կարելի է այն գտնել։

Այդտեղից էլ սկսում եք խաղը։

Խաղի տևողությունը 30 րոպեից չպետք է անցնի, թե չէ «կախարդական քուն մտած» ձեր ընկերը իր փրկարարներին սպասելուց կձանձրանա։ Եթե այդ ժամանակամիջոցում ոչ մեկը չգտնի, ուրեմն լավ է թաքնվել և հաղթանակը նրանն է։

Խաղի սկիզբը և ավարտը ազդարարում եք պայմանական ազդանշանով, ասենք՝ սուլիչով։

## ԱՋԱԿՈՂՄՅԱՆ ՀԱՐԵՎԱՆԸ

Այս խաղին մասնակցում են 10—12 հոգի, որոնք նստում են շրջանաձև։ Մտնելով շրջանի մեջ, խաղավարը դիմում է մերթ մեկին, մերթ մյուսին,



տալով որևէ հարց. «Ինչպե՞ս է ձեր առողջությունը», «Երգել սիրու՞մ եք», «Ո՞ւմ եք այսօր տեսել երազում» և այլն։ Կամ խնդրում է մի հասարակ շարժում կատարել, ասենք՝ ձեռքը բարձրացնել, կանգնել ու պտտվել տեղում, ծափ տալ և այլն։ Բայց հարցին պետք է պատասխանի և կամ խնդրանքը կատարի ոչ թե նա, ում դիմում է խաղավարը, այլ նրա աջակողմյան հարևանը, որի վրա խաղավարը նույնիսկ չի էլ նայում։ Ստանալով պատասխանը, խաղավարը դիմում է երկրորդին, երրորդին և այդպես շարունակ, մինչև խաղացողներից որևէ մեկը սխալվի։

Կարող է խաղացողին այնպիսի հարց տրվի, որին նա չի ուզում պատասխանել։ Այդ դեպքում նա պետք է ասի. «Չգիտեմ», «Չեմ հիշում» կամ «Չեմ ուզում պատասխանել», որը և կհամարվի նրա պատասխանը։ Չպատասխանել չի կարելի։

Թվում է, թե այս խաղը շատ է հասարակ, բայց այնուամենայնիվ հաճախ սխալվում են՝ հարցի անսպասելիությունից։ Երբեմն սխալմամբ պատասխանում է նա, ում ուղղված է հարցը, երբեմն էլ աջակողմյան հարևանը շփոթմունքից գլխի չի ընկնում, որ հենց ինքը պիտի պատասխանի։

Ով սխալվում է՝ դառնում է խաղավար, իսկ խաղավարը նստում է նրա տեղը։




ինդեքս 77806





20 կ.

# ՍԻՐԵԼԻ ԵՐԵԽԱՆԵՐ

Այս տարի մեր ռեսպուբլիկայում կազմակերպվեց ճարտարապետական և պատմական հուշարձանների պահպանության կամավոր ընկերություն, որը կոչված է խնամելու և պահպանելու դարերի ընթացքում մեր ժողովրդի կողմից ստեղծված կոթողները:

Ամեն մի հուշարձան, լինի այն որևէ հին շինություն, եկեղեցի, քանդակազարդ կամ արձանագրված մի քար՝ դա մեր նախնիների, հին հայ վարպետների հանճարի և ստեղծագործ աշխատանքի վառ արտահայտությունն է:

Ցավոք սրտի, դեռ կան երեխաներ և մեծահասակներ, որոնք անգիտակցաբար, իսկ ոմանք չարամտորեն կոտրում են հուշարձանների քարերը, գրոտում պատերը՝ հասցնելով անուղղելի վնաս մեր ժողովրդի բազմադարյան կուլտուրային:

Եթե ձեր քաղաքում, շրջանում կան ճարտարապետական կամ պատմական հուշարձաններ, պաշտպանեցե՛ք դրանք անգիտակից և վնասարար ձեռքերից:

Ամեն մի պիոներ և դպրոցական կարող է դառնալ Հայաստանի պատմական և ճարտարապետական հուշարձանների պահպանության կամավոր ընկերության անդամ և օգնել այդ ընկերությանը՝ պահպանելու մեր ժողովրդի դարավոր գանձերը:

